ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1960 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ— ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИ ЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Ֆ. ԿՈՆՍՏԱՆՏԻՆՈՎ, Խ. ՄՈՄՋՅԱՆ

*Մենք ապրում ենք փոթորկալի, դինամիկ մի դարում, երբ սոցիալական բոլոր պրոցեսները տեղի են ունենում ապշեցուցիչ արագությամբ, հարաճուն տեմպերով: Բոլորի աչքի առաջ փլվում են հին հասարակական ձևերը, կապիտալիստական հարաբերությունները, որոնց բուրժուազիան ու նրա գաղափարախոսությունը համարում են «բնական», «անփոփոխ», «հավերժական»: Երկրագնդի մեծ մասում կապիտալիզմին փոխարինելու է եկել մի նոր աշխարհ՝ սոցիալիզմի աշխարհը: Յուրաքանչյուր տարի, յուրաքանչյուր տասնամյակ այդ նոր հասարակությունը աճում է, ուժեղանում, ավելի ու ավելի լիակատար չափով դրսևորում իր անսպառ հնարավորությունները: Նոր քաղաքական օրգանիզմներ են առաջանում Ասիայում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում:*

*Կապիտալիստական աշխարհը լի է նրան ծվատող ներքին հակասություններով ու հակամարտություններով: Ամենուրեք հողագնդի այն մասում, որն ընկած է կապիտալիստական սիստեմի սահմաններում, այդ հարաճուն հակամարտությունները մերթ մի տեղ, մերթ մի ուրիշ տեղ, առաջ են բերում կապիտալիզմը վարից վեր ցնցող քաղաքական և սոցիալական պոռթկումներ: Սոցիալիստական, ինչպես նաև ազգային-ազատագրական ռևոլյուցիաները, տնտեսական, սոցիալական ու պետական ձևերի ու սիստեմների, իրավական ու բարոյական նորմերի փոփոխումը, ռևոլյուցիան գիտության ու տեխնիկայի մեջ՝ այս ամենը կատարվում է այնպես սրընթաց և այնպիսի «անսպասելիությամբ», որ իսկական խուճապ է առաջացնում բուրժուական գիտակցության մեջ:*

*Կապիտալիզմի գաղափարախոսներն ավելի ու ավելի հաճախ են սկսում խոսել ընդհանուր «անկման ու քայքայման», «կարգի ու ներդաշնակության» չքացման մասին: Ներկայումս բուրժուական քաղաքագետները, տնտեսագետները, փիլիսոփաները և սոցիոլոգները արդեն ի վիճակի չեն ժխտելու իրականության էական փոփոխությունները: Այժմ կապիտալիզմի պաշտպանների ջանքերը, ավելի քան երբևէ առաջներում, ուղղված են նրան, որպեսզի բացառեն այն միտքը, որ հասարակության առաջընթաց զարգացումն անհրաժեշտ բնույթ ունի: Մեր օրերի բուրժուական գաղափարախոսները համակված են անզուսպ, բայց ապարդյուն ձգտումով՝ իսպառ ջնջելու մարդկության առաջընթաց զարգացման գաղափարը, ստորինից դեպի բարձրն ընթանալու գաղափարը: Նույնիսկ «զարգացում», «պրոգրես» հասկացությունները սկսել են վախեցնել բուրժուական սոցիոլոգներին. նրանք առաջարկում են դրանք*

դեն նետել փիլիսոփայական բառարանից և սահմանափակվել «փոփոխություն» հասկացությամբ։ Եվ դա տերմինների հետ խաղ չէ, այլ պատմության հանդեպ, առաջադիմության հանդեպ, ապագայի հանդեպ վախի արտահայտություն։

Մեռնող կապիտալիզմի ներկայացուցիչների այդ վախը, պատմական բուռն փոփոխությունների պատճառների ու բնույթի բացատրությունները գտնելու նրանց անընդունակությունը միանգամայն հասկանալի են։ Չէ՞ որ աշխարհում կատարվող բոլոր խոր առաջադիմական տեղաշարժերը աղաղակող հակասությունների մեջ են բուրժուազիայի արմատական շահերի հետ։ Բայց դա բանի մի կողմն է միայն։ Մյուս կողմն էլ այն է, որ բուրժուական մտածողությունն իր բուն իսկ մետաֆիզիկական, դոգմայական բնույթով ի վիճակի չէ ընդգրկել մեր դարաշրջանի ամբողջ բարդությունն ու հակասականությունը։

Բայց հին, իրենց դարն ապրած հասարակական հարաբերությունների, քաղաքական ձևերի, տրադիցիոն հասկացությունների կտրուկ հեղաբեկումը մատերիալիստական դիալեկտիկայի՝ զարգացման, երևույթների ընդհանուր կապի ու փոխադարձ պայմանավորվածության վերաբերյալ բազմակողմանի ուսմունքի տեսակետից իրենից ներկայացնում է միանգամայն օրինաչափական մի պրոցես։ «Մարքսիզմը, որպես դիալեկտիկական մատերիալիզմի տեսություն,— մատնանշում է Վ. Ի. Լենինը,— կարողանում է ընդգրկել կյանքի հակասությունները, կապիտալիզմի և բանվորական շարժման կենդանի պատմությունը»։

Աշխարհում ամեն ինչ հոսում, ամեն ինչ փոփոխվում է հակադիր ուժերի ու տենդենցների ներքին հակասությունների և պայքարի հետևանքով. այս ճշմարտությունը իր բազմակողմանի ու ամենախոր գիտական հիմնավորումն է ստացել մարքսիստական դիալեկտիկայում։ Այն ուղղված է պահպանողական, մետաֆիզիկական տեսությունների դեմ, տեսություններ, որոնք սրբագործում ու պաշտպանում են բուրժուազիայի շահամոլական պահանջները, ազդարարում են կապիտալիստական հասարակության, մասնավոր կապիտալիստական սեփականության, մարդու կողմից մարդու շահագործման, բուրժուական պետության, իրավունքի հավիտենականություն ու անխախտելիություն, պատերազմների, բուրժուական փարիսեցիական բարոյականության և բուրժուազիայի կողմից սուրբ հայտարարված մյուս «անանցողական» նորմերի ու սկզբունքների հավիտենականություն։

Մարքսիստական դիալեկտիկան բուրժուազիային և նրա դոկտրինյոր-գաղափարախոսներին միշտ ներշնչել ու ներշնչում է զուտ չարություն ու սարսափ, որովհետև նա օգնել է բացահայտելու կապիտալիստական հասարակության պատմականորեն անցողիկ բնույթը, ցույց է տվել նրա բացաման ու կործանման անխուսափելիությունը։ Դիալեկտիկան ոչ մի բանի առաջ չի խոնարհվում և իր ներքին էությամբ քննադատական է ու ռևոլյուցիոն։ Դիալեկտիկական փիլիսոփայության համար, գրել է Էնգելսը, մեկընդմիշտ սահմանված ոչինչ չկա, և «...նրա առաջ ոչինչ դիմակայել չի կարող, բացի առաջացման ու ոչնչացման, ստորինից դեպի վերինն անվերջանալի բարձրացման անընդհատ պրոցեսից։ Նա ինքը հանդիսանում է այդ պրոցեսի սոսկ պարզ արտացոլումը մտածող ուղեղի մեջ»։

Ընդամենը մի քանի տասնամյակ է անցել Էնգելսի կողմից այդ խոսքերը գրելուց հետո, և մարդկությունը դարձել է երկրագնդի լայնածավալ տարածություններում կապիտալիզմի անկման վկան։ Այժմ ոչ միայն մարքսիստների, այլև մտածող բոլոր մարդկանց համար պարզ է, որ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ժամանակից սկսած աշխարհը մտել է նոր դարաշրջան՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանը։

Ինչպես ժամանակակից պատմության տնտեսական, սոցիալական և քաղաքական պրոցեսները, այնպես էլ ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության և մյուս գիտությունների մեջ կատարված աչքի ընկնող հայտնագործությունները, արտամղելով մետաֆիզիկական ու իդեալիստական պատկերացումները, կրկին ու կրկին խոսում են մատերիալիստական դիալեկտիկայի օրենքների ու սկզբունքների ճշտության մասին։ Այդ հայտնագործություններն իրենք նպաստում են դիալեկտիկական մեթոդի հետագա զարգացմանն ու կատարելագործմանը։

Մատերիալիստական դիալեկտիկան բանվոր դասակարգին ու կոմունիստական պարտիաներին զինում է աշխարհի ճանաչման և ռևոլյուցիոն վերափոխման հզոր միջոցով։ Այն հնարավորություն է տալիս խորամուխ լինելու երևույթների էության մեջ, բացահայտելու նրանց ներքին հակասությունները, որսալու նրանց զարգացման տենդենցը, ուղղությունը, ճիշտ ընտրելու այն խնդիրների կենսագործման միջոցները, որոնք առաջ են քաշվել պատմության կողմից։

Մատերիալիստական դիալեկտիկան ուսուցանում է ռևոլյուցիոն տեսության և ռևոլյուցիոն պրակտիկայի միասնությունը։ Վ. Ի. Լենինը, ընդգծելով մարքսիզմի ստեղծագործական բնույթը, գրում էր. «Մեր ուսմունքը,— ասում էր Էնգելսը իր մասին և իր հռչակավոր բարեկամի մասին,— դոգմա չէ, այլ ղեկավարություն գործողության համար։ Այդ կլասիկ դրույթի մեջ զարմանալի ուժով ու արտահայտությամբ ընդգծված է մարքսիզմի այն կողմը, որը ամեն քայլափոխում աչքաթող է արվում։ Իսկ աչքաթող անելով այդ՝ մարքսիզմը դարձնում ենք միակողմանի, այլանդակ, անկենդան, հանում ենք նրանից իր կենդանի հոգին, խարխլում նրա արմատական թեորիական հիմունքները՝ դիալեկտիկան, ուսմունքը համակողմանի ու հակասություններով լի պատմական զարգացման մասին. մենք կտրում ենք նրա կապը էպոխայի որոշ գործնական խնդիրների հետ, որոնք կարող են փոխվել պատմության յուրաքանչյուր նոր շրջադարձի հետ» (Երկեր, հ. 17, էջ 28)։

Մատերիալիստական դիալեկտիկան ամենահուսալի ու փորձված տեսական զենքն է մարքսիստական պարտիաների պայքարում ինչպես ընդդեմ ռեվիզիոնիզմի, այնպես էլ ընդդեմ դոգմատիզմի, աղանդավորության և «ձախ» դոկտրինյորության։

Ռևիզիոնիզմը, փորձելով կապիտալիզմը փրկել պրոլետարական ռևոլյուցիայից, մատերիալիստական դիալեկտիկան նենգափոխում է սոֆիստիկայով և էկլեկտիզմով, հախուռն կերպով ժխտում է կապիտալիզմի անտագոնիստական բնույթի, պրոլետարիատի ու բուրժուազիայի արմատական շահերի անհաշտելիության, ռևոլյուցիոն ճանապարհով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու օրինաչափության, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումն ապահովելու համար պրոլետարիատի դիկտատուրայի պատմական անհրաժեշտության վերաբերյալ անհերքելի, կյանքի, ամբողջ հասարակական-պատմական պրակտիկայի կողմից հաստատված և հաստատվող դրույթները։ Դեմագոգիկ կերպով քողարկվելով նոր պայմաններին Մարքսի ուսմունքը հարմարեցնելու ան-

հրաժեշտությամբ, ռևիզիոնիստները իրականում հետապնդում են հակադիր նպատակ՝ վերացնել, լիկվիդացնել ռևոլյուցիոն մարքսիզմը, պրոլետարիատի մեծ ուսմունքը հարմարեցնել բուրժուազիայի ճաշակին ու պահանջմունքներին։

Բուրժուազիայի գաղափարախոսները, նրա քաղաքական ներկայացուցիչները հաճախ մարքսիստ-լենինյաններին, կոմունիստներին կեղծ կերպով կշտամբանք են նետում, մեղադրելով դոգմատիզմի, դոկտրինյորության մեջ։ Իրականում մարքսիզմ-լենինիզմը, նրա ռևոլյուցիոն դիալեկտիկան, ամեն տեսակ դոգմատիզմի, դոկտրինյորության, ադանդավորության թշնամիներն են։ Մարքսիզմ-լենինիզմի ամբողջ պատմությունը, բոլշևիզմի պատմությունը վկայում է դոգմատիզմի հանդեպ նրա անհաշտելիության մասին։ «Դոգմատիզմ չի կարող լինել այնտեղ,—մատնանշում էր Լենինը,— որտեղ դոկտրինայի գերագույն ու միակ չափանիշը համարվում է նրա համապատասխանությունը հասարակական-տնտեսական իրական պրոցեսին...» (Երկեր, հ. 1, էջ 379)։

Այն բոլոր հաղթանակները, որ տարել են լենինիզմը, բոլշևիզմը՝ ստեղծագործական մարքսիզմի հաղթանակներն են։ Ո՞ւր կլինեին այսօր բոլշևիկները, կոմունիստները, եթե Լենինը, լենինյանները, անհաշտ պայքար մղելով ռևիզիոնիզմի դեմ, միաժամանակ պայքար չմղեին դոգմատիկների դեմ, որոնք կառչել էին հնացած ֆորմուլաներից և դրույթներից։ Ռևոլյուցիոն դիալեկտիկայի նկատմամբ ունեցած հավատարմությունը Լենինին, բոլշևիկներին հնարավորություն տվեց լուծելու ամենաբարդ տեսական և պրակտիկ ռևոլյուցիոն պրոբլեմներ, կողմնորոշվելու բարդ ու խճճված իրադրության մեջ, ճիշտ ուղիներ նշելու պատմության շեշտակի, երբեմն անսպասելի շրջադարձերում։

Միայն կոնկրետ կացության, հասարակական կյանքի կոնկրետ պայմանների մանրազնին, բազմակողմանի, խոր վերլուծությունը կարող է հիմք դառնալ բանվոր դասակարգի և նրա պարտիայի ճիշտ քաղաքական գիծ, բանվորական շարժման ճիշտ տակտիկա և ստրատեգիա մշակելու, պայքարի խիկական լոզունգներ առաջադրելու համար։ Այսպիսին է դիալեկտիկական մեթոդի հիմնական պահանջներից մեկը։

Մտածողության կոնկրետությունը, պատմականությունը որոշվում է իրական աշխարհի փոփոխություններով։ Քանի որ մեր հասկացություններն ու պատկերացումները մեզնից դուրս գոյություն ունեցող առարկաների ու երևույթների մտային պատկերացման էությունն են, ապա բնական է, որ իրականության զարգացման ու փոփոխության համեմատ պետք է փոփոխվեն նաև մեր գիտելիքները այդ էության մասին։ Այդ պայմանի խախտումը պարտիային անխուսափելիորեն կտաներ դեպի խզում կենդանի կյանքից, դեպի այն, որ մեր հասկացություններն ու պատկերացումները կդադարեին լիովին համապատասխանորեն վերարտադրել աշխարհի իսկական, փոփոխվող պատկերը, իսկ մեր տեսությունը կդադարեր գործողության հուսալի ղեկավարություն լինելուց։

Մատերիալիստական դիալեկտիկան, թշնամի լինելով մտածողության դոգմատիկական եղանակին, հաստատել է պրակտիկայի առաջնայնությունը տեսության նկատմամբ այն իմաստով, որ զարգացող հասարակական պրակտիկան հանդիսանում է ոչ միայն տեսական մտքի հիմքը, աղբյուրը, այլև



այս կամ այն տեսական դրույթի ճշմարտացիության, կենսունակության գնահատության չափանիշը, մի անկաշառ դատավոր, որը մոլորությունն անջատում է ճշմարտությունից, նվազ խոր գիտելիքը տարբերում ավելի խոր գիտելիքից, չի հանդուրժում երեկվա իրականությունն արտահայտող և այդ իսկ պատճառով նոր ծագող երևույթները, պրոցեսները և կացությունները ճիշտ բացատրելու անընդունակ, քարացած հասկացությունները։

Բանվոր դասակարգն ու նրա դաշնակիցները, ամեն մի առաջավորի նպատակասլաց կրողները, կենսականորեն շահագրգռված են այն բանում, որ նրանց ուղին լուսավորող տեսությունը մշտապես հարստանա նոր գիտական արժեքներով և համարձակորեն ազատագրվի այն ամենից, ինչը հնացած է, կորցրել է իր ուժն ու նշանակությունը։ Ահա թե ինչու կոմունիստական պարտիաները, նրանց ղեկավարները անդադրում աշխատել և աշխատում են թույլ չտալ, որ ռևոլյուցիոն տեսությունը կտրվի և ետ մնա հասարակական պրակտիկայից, ստեղծագործաբար զարգացնում են մարքսիզմ-լենինիզմը, այն հարստացնում են այնպիսի նոր դրույթներով, որոնք գիտականորեն ընդհանրացնում են այն ամենը, ինչ հենց նոր ծագել է հասարակական կյանքում, որպեսզի մեր տեսությունը առաջ անցնի պրակտիկայից, լինի պատմության հետագա ընթացքի, մեր հակառակորդների՝ խաղաղության ու սոցիալիզմի թշնամիների, հնարավոր գործողությունների կանխատեսման աղբյուրն ու գործիքը։

Մարքսիզմի ստեղծագործական բնույթը, նրա անհաշտելիությունը ամեն մի քարացածության ու ինքնահանգստացման հանդեպ միշտ էլ եղել և մնում են այդ մեծ ռևոլյուցիոն ուսմունքի տարբերիչ առանձնահատկությունը։ Այդ տարբերիչ գծերը մեծագույն ուժով դրսևորվել են Լենինի և լենինյանների աշխատություններում ու ամբողջ գործունեության մեջ։ Երբ կապիտալիզմի զարգացման վերընթաց գիծը փոխարինվեց վարընթաց գծով, երբ կապիտալիզմի բազխում ու վերնաշենքում տեղի ունեցան մի շարք կառուցվածքային փոփոխություններ, փոխվեց պայքարող ուժերի հարաբերակցությունը, խորացան կապիտալիստական սիստեմի ներքին հակասություններն ու հակամարտությունները, սկսվեց իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանը, այն ժամանակ մարքսիզմը ևս իր բնույթի շնորհիվ պետք է էականորեն հարստանար, ազատվեր մի շարք հնացած դրույթներից, հետևություններից, որոնք իր ժամանակին ճիշտ էին, բայց որոնք դադարեցին նոր պայմաններին համապատասխան լինելուց, ուստի և Լենինի կողմից համարձակորեն փոխարինվեցին այնպիսի նոր դրույթներով, որոնք համապատասխանում են փոփոխված իրադրությանը։ Դիալեկտիկական մեթոդի պահանջներին համապատասխանաբար մարքսիզմի զարգացումը Լենինի կողմից անհրաժեշտ էր, այլապես մարքսիզմը կկորցներ իր կազմակերպող և վերափոխող դերը սոցիալիզմի համար մղված պայքարում։ Այդ պահանջների շնորհիվ էլ ծագեց լենինիզմը՝ որպես նոր պատմական դարաշրջանի մարքսիզմ։

Լենինի ուժն ու վեհությունը, նրա հանճարեղությունը հենց նրանում է, որ նա վճռականապես պայքարելով բոլոր և ամեն տեսակ օպորտունիստների դեմ, միաժամանակ չվախեցավ ձեռք բարձրացնել մի քանի հնացած տեսական հետևությունների ու ընդհանրացումների դեմ, որոնք նոր դարաշրջանի սկսումով կորցրել էին իրենց ճշտությունն ու ուժը, հակասության մեջ էին ընկել փոփոխված օբյեկտիվ պայմանների հետ։ Լենինը, որպես մեծագույն

ռևոլյուցիոներ քաղաքականության և փիլիսոփայության մեջ, սովորեցնում էր՝
«Մենք Մարքսի թեորիայի վրա բնավ էլ չենք նայում որպես մի ինչ-որ ավար-
տուն և անձեռնմխելի բանի...» (Երկեր, հ. 4, էջ 262)։
Լենինը, հաշվի առնելով նոր պայմանները, հենվելով մարքսիզմի սկզբ-
բունքների, նրա դիալեկտիկայի վրա, էլ ավելի զարգացրեց սոցիալիստական
ռևոլյուցիայի տեսությունը, այդ թվում բուրժուա-դեմոկրատական ռևոլյու-
ցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու հարցը, պրոլետարիատի հե-
գեմոնիայի և նրա դաշնակիցների վերաբերյալ ուսմունքը, ստեղծեց նոր տի-
պի ռևոլյուցիոն պարտիայի վերաբերյալ ուսմունք և այլն։ Հենվելով Մարքսի
«Կապիտալ»-ի վրա, Լենինը հայտնագործեց մոնոպոլիստական կապիտալիզ-
մի՝ իմպերիալիզմի, օրինաչափությունները և այդ հիման վրա ցույց տվեց
Մարքսի այն դրույթի հնացածությունը, որի համաձայն պրոլետարական ռե-
վոլյուցիան հաղթանակել կարող է միայն միաժամանակ բոլոր առաջատար
բուրժուական երկրներում։ Հայտնագործելով կապիտալիզմի անհամաչափ
զարգացման օրենքը, խորապես վերլուծելով իմպերիալիստական երկրներում
գոյություն ունեցող նոր պայմանները, տենդենցները, սոցիալական ուժերի
դասավորությունը, Լենինը հիմնավորեց սկզբնապես մի քանի կամ նույնիսկ
մեկ, առանձին վերցրած, երկրում սոցիալիզմի հաղթանակի ռեալ հնարավո-
րությունը։ Դա մեծագույն հայտնագործություն էր, որը բացառիկ ազդեցու-
թյուն թողեց սոցիալիզմի պատմական ճակատագրի վրա։ Մարքսիզմի բոլոր
բաղկացուցիչ մասերը՝ քաղաքատնտեսությունը, գիտական սոցիալիզմը,
մարքսիստական փիլիսոփայությունը, լենինյան հանճարի ուժով բազմակող-
մանիորեն զարգացան և հարստացան՝ բանվոր դասակարգի պայքարի նոր
պայմաններին և բնագիտական մտքի նոր նվաճումներին համապատասխա-
նաբար, դիալեկտիկական մեթոդի պահանջներին համապատասխանաբար։
Պայքարելով աջ դոգմատիկների և Պլեխանովի ու Կաուցկու տիպի դոկ-
տրինյորների դեմ՝ Լենինը ծաղրում էր նրանց պեդանտիզմը, նրանց նվիր-
վածությունը գրքային մեռած իմաստության ու սխոլաստիկային, նրանց
ձգտումը՝ նոր սոցիալիստական պայմանների, նոր հասարակական երևույթ-
ների կոնկրետ-պատմական վերլուծությունը ներփոխելու վերացական ֆոր-
մուլաներով ու սխեմաներով, դատարկ և անկենդան ֆրազներով և այս կամ
այն մեջբերումը վկայակոչելով։ Ուշադրություն չդարձնել փոփոխված պայ-
մաններին, մատնանշում էր Լենինը, «...պաշտպանել մարքսիզմի հին որո-
շումները, նշանակում է հավատարիմ լինել տառին և ոչ թե ուսմունքի ոգուն,
նշանակում է հիշողությամբ կրկնել նախկին եզրակացությունները, չկարողա-
նալով օգտվել մարքսիստական հետազոտության սկզբունքներից՝ քաղաքական
նոր կացությունը վերլուծելու համար» (Երկեր, հ. 6, էջ 583)։

## II

Բանվորական շարժման պատմական փորձը, սոցիալիզմի համար բան-
վոր դասակարգի մղած պայքարի փորձը ցույց է տալիս, որ բավական չէ գի-
տենալ, նույնիսկ բերանացի անել մարքսիստական ֆորմուլաներն ու դրույթ-
ները։ Կարևորը նախ և առաջ մարքսիզմ-լենինիզմի, մարքսիստական դիա-
լեկտիկայի ստեղծագործաբար կիրառման հմտությունն է պայքարի բարդ
պայմաններում, հատկապես այն ժամանակ, երբ զգալիորեն փոփոխվում է
իրադրությունը։



Առավել դժվար, բայց խիստ կարևոր է կարողանալ ազատ կերպով կողմ-
նորոշվել սոցիալական ցնցումների, պատմության կտրուկ շրջադարձերի և
դասակարգերի դրության, սոցիալական ուժերի հարաբերակցության մեջ կա-
տարված փոփոխությունների փոթորկալի դարաշրջաններում։ Իսկ մենք հենց
այդպիսի դարաշրջանում ենք ապրում։ Մեծ թե փոքր, կարևոր թե երկրորդա-
կան, բարդ թե պարզ այն շատ հարցերի թվում, որոնք մեր օրերում ծառա-
նում են մարդկության առաջ և ճիշտ պատասխան պահանջում մարքսիստ-
լենինյաններից, իրենց կարևորությամբ, բոլոր մարդկանց պատմական ճա-
կատագրի վրա ունեցած իրենց ազդեցությամբ, առաջին տեղումն են պատե-
րազմի և խաղաղության, տարբեր երկրների կողմից սոցիալիզմին անցնելու
ուղիների վերաբերյալ հարցերը։
Արդյոք անխուսափելի՞ է նոր համաշխարհային պատերազմը։ Իմպերիա-
լիստներին կհաջողվի՞ արդյոք մարդկությանը ենթարկել ատոմային աղետի։
Ժողովուրդները կարո՞ղ են արդյոք այս անգամ, խաղաղության ուժերի և պա-
տերազմի ուժերի ժամանակակից հարաբերակցության պայմաններում, պաշտ-
պանել խաղաղությունը, սանձահարել ագրեսորներին։
Դրանց պատասխանել չի կարելի ելակետ ընդունելով միայն այս կամ
այն վերացական տեսական դրույթը, առանց հաշվի առնելու ժամանակակից
իրականությունը, ժամանակակից պայմանները։ Փոփոխված պայմանները ան-
տեսել կարող են միայն դոկտրինյորները և ոչ թե ռևոլյուցիոներները։ Դիա-
լեկտիկան, ինչպես արդեն ասվեց, պահանջում է կոնկրետ կացության կոնկ-
րետ վերլուծություն, այսինքն՝ այն պրոցեսների վերլուծություն, որոնք որո-
շում են ժամանակակից աշխարհի դեմքը։ Իսկ այս աշխարհում գլխավորը և
որոշողը իմպերիալիզմի անշեղ թուլացումը, նրա նեխումն է և սոցիալիզմի
երկրների ուժեղացումը։
Կապիտալիզմի թուլությունը, խոցելիությունը, պատմականորեն դատա-
պարտված լինելը պայմանավորվում են նրան ծվատող հակասություններով՝
արտադրության հասարակական բնույթի և աշխատանքի արդյունքների
յուրացման մասնավոր եղանակի միջև, աճող հակասությամբ պրոլետա-
րիատի և բուրժուազիայի միջև։ Կապիտալիզմի կարևորագույն հակասություն-
ների թվին է պատկանում նաև մի բուռ իմպերիալիստական տերությունների
և իմպերիալիզմի կողմից կողոպտվող, հարյուր միլիոնավոր բնակչություն
ունեցող գաղութային ու կախյալ երկրների միջև եղած հակասությունը։ Վեր-
ջապես, անհրաժեշտ է միշտ հիշել բուն իսկ իմպերիալիստական երկրների՝
ԱՄՆ-ի և Անգլիայի, ԱՄՆ-ի և Ֆրանսիայի, Անգլիայի և ԳՖՌ-ի, ԱՄՆ-ի և
Ճապոնիայի միջև, եվրոպական բոլոր կապիտալիստական երկրների և ԱՄՆ-ի
միջև եղած հակասությունները։ Կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական
զարգացման անհամաչափության օրենքը շարունակում է գործել նաև այսօր.
կապիտալիստական երկրների միջև կատաղի պայքար է գնում շուկաների,
ազդեցության ոլորտների, հումքի աղբյուրների համար։ Եվ, եթե գոյություն
չունենար հզոր սոցիալիստական ճամբարը, եթե բուրժուական երկրների ներ-
սում բանվորական շարժման հանդեպ վախը չլիներ, իմպերիալիստները կրկ-
կին կբռնեին միմյանց կոկորդից, կսանձազերծեին նոր, երրորդ համաշխար-
հային պատերազմ աշխարհը և ազդեցության սֆերաները վերաբաժանելու
համար։ Խանգարում է համաշխարհային սոցիալիստական սիստեմը։ Եվ դրա-

նում նույնպես երևում է նրա, որպես խաղաղության գործոնի, մեծ պրոգրեսիվ դերը:

Մարքսիստական դիալեկտիկան մեզ սովորեցնում է ոչ միայն տեսնել հակասությունները, այլև դրանցից զատել գլխավորները: Միջազգային ասպարեզում մեր օրերում այդպիսի վճռական հակասությունն է հանդիսանում, իհարկե, սոցիալիզմի հարաճուն համաշխարհային սիստեմի և իր մայրամուտն ապրող կապիտալիզմի, իմպերիալիզմի համաշխարհային սիստեմի միջև եղած հակասությունը: Ժամանակակից համաշխարհային հակասությունների բարդ ցանցում այդ հակասությունը կենտրոնականն է և դա հսկայական ազդեցություն է թողնում ժամանակակից պատմության վրա, ինչպես և կապիտալիստական սիստեմի ներսում հակամարտությունների սրման, այդ սիստեմի թուլացման վրա:

Իհարկե, յուրաքանչյուր կապիտալիստական երկրի զարգացումը նախ և առաջ որոշվում է ներքին օրենքներով, հակասություններով և դրանց հիման վրա ծավալվող՝ աշխատավորների մղած պայքարով, որոնց գլխավորում է բանվոր դասակարգը: Բայց սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առկայությունն ու աճումը ազդեցություն են գործում և գնալով ավելի մեծ չափով ազդեցություն կգործեն նաև կապիտալիստական երկրների ներսում դասակարգերի մղած պայքարի վրա:

Իմպերիալիստներն ու նրանց գաղափարախոսները հասկանում են այդ գործոնի նշանակությունը կապիտալիզմի պատմական ճակատագրի համար, ժամանակակից աշխարհում կատարվող իրադարձությունների ընթացքի համար: Այդ պատճառով էլ նրանք սոցիալիզմի երկրներին ատում են անասնական ատելությամբ. նրանց վախեցնում, սարսափի մեջ են գցում սոցիալիստական երկրների հարաճուն հաջողությունները տեխնիկայի և գիտության, էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում, ժողովրդի բարեկեցության աճման բնագավառում: Եվ, եթե հնարավոր լիներ սոցիալիստական երկրներին խեղդել, ջնջել երկրի երեսից, ապա իմպերիալիստները շատ վաղուց կանեին այդ բանը: Բայց նրանց ձեռքերը կարճ են:

Նրանք փորձեցին երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան խեղդել օրորոցում, ինչպես «նուրբ» կերպով արտահայտվել է իմպերիալիստական բուրժուազիայի առավել ականավոր ներկայացուցիչներից մեկը՝ Ուինստոն Չերչիլը: Բայց «մանուկը» դուրս եկավ ավելի ուժեղ, քան լեգենդար Հերկուլեսը: Սոցիալիզմի երկիրը խեղդելու փորձ հանդիսացավ նաև հիտլերյան Գերմանիայի ուխտադրուժ հարձակումը ՍՍՌՄ-ի վրա: Բայց երկրորդ համաշխարհային պատերազմի արդյունքն այն եղավ, որ պարտություն կրեց և ջախջախվեց գերմանական ագրեսիվ իմպերիալիզմը: Իսկ սոցիալիզմը պատերազմից դուրս եկավ ավելի ուժեղ ու հզոր և դարձավ համաշխարհային սիստեմ:

Այդպիսին է պատմության դիալեկտիկան: Նա հաճախ այնպիսի արդյունքների է հասնում, որոնք միանգամայն անսպասելի են ռեակցիոներների համար, նախատեսված չեն նրանց կողմից և ուղղակի հակադիր են այն նպատակներին, որ հետապնդում են նրանք:

Սոցիալիզմի աճող համաշխարհային սիստեմի առկայությունը համաշխարհային պատմության մեջ ապրած էտապի այն վճռական փաստն է, որը որոշում է այդ էտապի պատմական յուրահատկությունը և մարդկության առաջընթաց զարգացման ուղղությունը: Գնահատելով պատմության ժամանա-



կակից էտապը, արդեն բավական չէ կրկնել դարաշրջանի այն ենթադրությունը, որ տվել է Վ. Ի. Լենինը առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին, երբ իմպերիալիզմը միակ և համապարփակ սիստեմ էր: Ինքը Լենինը Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո, վերլուծելով հասարակության զարգացման ընթացքը, գրում էր. «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը» (Երկեր, հ. 31, էջ 491): ՍՄԿՊ XX համագումարում, ընկեր Խրուշչովի զեկուցման մեջ, սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների Խորհրդակցության Դեկլարացիայում լենինյան այդ դրույթը իր հետագա ստեղծագործական զարգացումն ստացավ՝ հաշվի առնելով աշխարհում տեղի ունեցած հետագա փոփոխությունները, համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացումը: Ներկայումս չի կարելի քաղաքականության, էկոնոմիկայի, իդեոլոգիայի հարցերը, պատերազմի և խաղաղության, տարբեր երկրների կողմից սոցիալիզմին անցնելու ձևերի հարցերը քննարկել շեղվելով այդ հիմնական գործոնից, որն իր կնիքն է դրել աշխարհում կատարվող բոլոր կարևորագույն իրադարձությունների վրա: Սոցիալիստական սիստեմը այսուհետև ևս աճելու, զարգանալու է: Կապիտալիզմի համաշխարհային սիստեմը, հակառակ բուրժուազիայի հույսերի, այսուհետև ևս ընթանալու է վարընթաց գծով: Նորը, առաջավորը պետք է առաջ գնա: Իսկ հինը, իր դարն ապրածը, որքան էլ նա ուժեղ, կատաղի և ագրեսիվ լինի, պատմության կողմից դատապարտված է կործանման:

Հապա ինչպե՞ս է այդ երկու հակառակ հասարակական-քաղաքական սիստեմների հակասական զարգացման պայմաններում իրացվում տարբեր հասարակական կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունը: Իրակա՞ն է դա արդյոք: Խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքն արդյոք չի՞ հակասում այն փաստին, որ իմպերիալիզմը մնացել է հենց այնպիսի ռեակցիոն ու ագրեսիվ, որպիսին նա կար 40—45 տարի սրանից առաջ: Այդպիսի հարցեր են դնում որոշ ընկերներ՝ գրականագետներ, քաղաքական գործիչներ կոմունիստների միջավայրից: Քննարկենք այդ կարևորագույն պրոբլեմը, որը շոշափում է հարյուր միլիոնավոր մարդկանց շահերն ու ճակատագիրը:

Հիրավի, մի՞թե ամենագիշատիչ, ամենաարյունարբու իմպերիալիզմը՝ ԱՄՆ-ի իմպերիալիզմը, սպառազինման կատաղի մրցավազք չի իրականացնում: Մի՞թե նա ամբողջ երկրագնդով մեկ, հատկապես սոցիալիստական երկրների շուրջը, ռազմական բազաներ չի ստեղծել: Մի՞թե նա նորից չի աճեցնում ճապոնական ու արևմտագերմանական իմպերիալիզմն ու միլիտարիզմը: Մի՞թե նա կապիտալիստական պետությունները չի ցանցապատել այնպիսի ագրեսիվ պակտերով, որոնք ուղղված են սոցիալիստական երկրների, Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ժողովուրդների դեմ: Վերջապես, ՍՍՌՄ-ի դեմ ուղղված լպիրշ ագրեսիվ ակտերը, մեր պետական սուվերենիտետի խախտումը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի դեմ ուղղված ագրեսիվ գործողությունները՝ մի՞թե սա ժամանակակից կապիտալիզմի, հատկապես ԱՄՆ-ի իմպերիալիզմի ագրեսիվության վկայությունը, ապացույցը չէ:

Այդ բոլորը անվիճելի, ակնհայտ ճշմարտություններ են։ Դրան կարելի կլիներ ավելացնել Փարիզի բարձր մակարդակի խորհրդակցության ձախողումը ԱՄՆ-ի կառավարության կողմից, իմպերիալիստների հրաժարումը ատոմային զենքն արգելելուց, նրանց կեղծ դիրքը զինաթափման հարցում, վտանգավոր «խաղը» ատոմային ռումբերով բեռնավորված թռչող ռմբաձիգների հետ։ «Սառը պատերազմի» ամբողջ քաղաքականությունը վկայում է այն մասին, որ իմպերիալիզմի գիշատչական բնույթը չի փոխվել։

Հակառակ կապիտալիզմի ջատագովների հավաստիացումների, հակառակ ռեֆորմիստների ու ռևիզիոնիստների կարծիքի, որոնք փորձում են դունազարդել ժամանակակից կապիտալիզմը, նրան ներկայացնել որպես «ժողովրդական», համարյա «սոցիալիստական», իմպերիալիզմի ռեակցիոն բնույթը, նրա օրենքները, շարժիչ ուժերը, նրա նպատակներն ու քաղաքականությունը մնացել են նախկինը։

Լենինից հետո իմպերիալիզմի՝ նրա բացահայտած ռեակցիոն գծերը է՛լ ավելի են զարգացել։ Այն ժամանակ դեռ նոր միայն սաղմնավորվող ֆաշիզմը, որպես նեխող կապիտալիզմի ամենաագրեսիվ, ամենառեակցիոն գծերի սոցիալական, քաղաքական և գաղափարական դրսևորում, իր ավարտուն, գարշելի արտահայտությունն ստացավ հիտլերիզմի, իտալական, իսպանական և ճապոնական ֆաշիզմի մեջ, մակարթիզմի, չանկայշիզմի և լիսինմանովշչինայի մեջ։ Հիտլերիզմի սանձազերծած երկրորդ համաշխարհային պատերազմը, նրա մայդանեկներով, օսվենցիմներով հանդերձ, ֆաշիստների հրեշավոր գազանություններով ու չարագործություններով հանդերձ, էպիզոդ չէ, այլ իմպերիալիզմի գազանային, հակաժողովրդական բնույթի արտահայտություն։ Այդ ամենը անվիճելի է։

Բայց մարքսիստը պարտավոր է տեսնել նաև մի այլ բան։ Կապիտալիստական լագերը չի կարելի դիտել որպես մի մոնոլիտ բան։ Նա, ինչպես արդեն նշվել է վերևում, ծվատվում է ներքին հակասություններով, հակամարտություններով։ Ագրեսիվ կապիտալիստական երկրների հետ միասին կան նաև այնպիսի կապիտալիստական երկրներ, որոնք շահագրգռված չեն իմպերիալիստական պատերազմների մեջ։ Նույնիսկ այնպիսի ագրեսիվ կապիտալիստական երկրում, որպիսին հանդիսանում են ԱՄՆ-ը, բացի ժողովրդից, որը շահագրգռված է խաղաղության գործում, բուն իսկ բուրժուազիայի ներսում պայքարում են տարբեր ուժեր՝ ագրեսիվ շրջանները, որոնք շահագրգռված են սպառազինման մրցավազքի, պատերազմների մեջ, և նրանք, ովքեր վախենում են նոր համաշխարհային պատերազմից և հայտարարում, թե «ատոմային պատերազմում հաղթող չի լինի»։ Կապիտալիստական երկրների ներսում ծագել և սրվում են հակասությունները մոնոպոլիաների և բուրժուազիայի մոնոպոլիստական խավերի միջև։ Այն մարքսիստը, որը տալիս է ժամանակակից կապիտալիզմի գիտական վերլուծությունը, պարտավոր է գիտենալ, տեսնել կապիտալիզմի ներսում եղած այդ բոլոր հին ու նոր հակասությունները և կարողանալ դրանք օգտագործել այն պայքարում, որ մղվում է խաղաղության ու սոցիալիզմի շահերի համար։

Իմպերիալիզմի բնույթը չի փոխվել, դա ճիշտ է։ Բայց աշխարհը, ամբողջությամբ վերցրած, միանգամայն այլ է դարձել։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմն ընդգրկում է մարդկության մեկ երրորդից ավելին, երկրագնդի տերիտորիայի քառորդ մասը։ Գաղութակալության ավերակների վրա առաջացել



են անկախ խաղաղասեր պետություններ։ Գոյություն ունի և աճում է համաշխարհային բանվորական ռևոլյուցիոն շարժում բոլոր կապիտալիստական երկրներում։ Ալեկոծվում է ազգային-ազատագրական, հակագաղութային շարժման օվկիանոսը։ Վերջապես, գոյություն ունի խաղաղության համար մարտնչողների իր թափով ու խորությամբ չտեսնված հզոր շարժում. այդ շարժումը ունի հուսալի, հավատարիմ դաշնակից և ամուր հենարան ի դեմս սոցիալիստական պետությունների, որոնք վարում են հետևողական խաղաղասիրական քաղաքականություն։

Այդ բոլորը վկայում է այն մասին, որ համաշխարհային մասշտաբով ուժերի հարաբերակցությունը արմատապես փոխվել է հօգուտ խաղաղության և սոցիալիզմի։ Դա է գլխավորը։ Եվ ոչ մի հեռատես քաղաքական գործիչ-մարքսիստ այդ մասին չպետք է մոռանա և չի կարող մոռանալ։

Իհարկե, պետք չէ նվազեցնել իմպերիալիստական քաղաքականության վտանգավորությունը, մի քաղաքականության, որն ուղղված է խաղաղության գործի քայքայմանը և նոր պատերազմի սանձազերծմանը։ Հարկավոր չէ նվազեցնել իմպերիալիզմի ուժը։ Նա դեռևս, դժբախտաբար, ուժեղ գազան է և կարող է մարդկությանը մեծ աղետներ ու տառապանքներ պատճառել։ Կրկին վերածնվում է արևմտագերմանական և ճապոնական իմպերիալիզմը։ ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան, այդ խոշորագույն կապիտալիստական տերությունները, խաղաղ ժամանակ երբեք այդպիսի մեծ բանակներ չեն ունեցել. նրանց ռազմական բյուջեները երբեք այդպիսի երևակայական մեծություն չեն ունեցել, ինչպես այժմ. սպառազինման մրցավազքը երբեք այդպիսի հրեշավոր չափերի չի հասել, իսկ ռազմական շրջանների ազդեցությունը բուրժուական պետությունների արտաքին քաղաքականության վրա երբեք այդքան լայն չի եղել։ Իմպերիալիզմի ուժերի թերագնահատումը, ինչպես և դրանց գերագնահատումը, վնասակար է խաղաղության և սոցիալիզմի գործի համար։ Իրերը, երևույթները պետք է դիտել այնպես, ինչպես նրանք կան, սովորեցնում է մարքսիստական դիալեկտիկան։

Սոցիալիստական և կապիտալիստական սիստեմները տրամագծորեն հակադիր են և զարգանում են այնպիսի օրենքներով, որոնք արմատապես տարբեր են միմյանցից։ Սոցիալիզմի բնույթն այնպիսին է, որ նա խաղաղություն է պահանջում։ Սոցիալիստական հասարակությունում չկան այնպիսի ուժեր, որոնք շահագրգռված լինեն սպառազինման մրցավազքի, միլիտարիզմի, հափշտակողական պատերազմների մեջ։ Իր բոլոր պոտենցիաները բացահայտելու, դրսևորելու համար սոցիալիզմին խաղաղություն է պետք։ Մոնոպոլիստական կապիտալիզմը, ընդհակառակը, իր բնույթով հղի է պատերազմներով։ Մարքսիստ-լենինյանները այդ հաշվի են առնում իրենց քաղաքականության մեջ։

Մարքսիստ-լենինյանները միևնույն ժամանակ գտնում են, որ ժամանակակից պայմաններում իրական հնարավորություն կա սանձահարելու պատերազմի հրձիգներին, թույլ չտալու համաշխարհային պատերազմի առաջացում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, ՍՄԿՊ Կենտկոմը, կենսագործելով խաղաղության լենինյան քաղաքականությունը, պայքարելով ռևիզիոնիզմի դեմ, մշտապես և անդավաճան կերպով մերկացրել և մերկացնում են իմպերիալիզմի գազանային բնույթը, ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի

իմպերիալիստների ագրեսիվ մեքենայություններն ու ակցիաները, գլխավորում
են իմպերիալիզմի դեմ մղվող պայքարը: Սովետական Միությունը միշտ հան-
դես է եկել և հանդես է գալիս ի պաշտպանություն իմպերիալիստական ագրե-
սիայի զոհերի, նրանց օգնությամբ է ցույց տվել և ցույց է տալիս: Բոլորին
հայտնի է Սովետական Միության դերը Եգիպտոսում, Լիբանանում իմպերիա-
լիստների ագրեսիվ գործողությունները խափանելու, ինչպես նաև Իրաքում
իմպերիալիստների դավադրությունը խափանելու գործում: Դա իրականում
պայքար էր իմպերիալիզմի, նրա գիշատչական քաղաքականության դեմ: Այդ
պայքարը գործնականում հաստատեց պատերազմները խափանելու վերաբեր-
յալ ՍՄԿԿ XX համագումարի առաջադրած դրույթների ճշտությունը:

Երբ մարքսիստ-լենինյանները խոսում են պատերազմները խափա-
նելու մասին, երկու հակադիր հասարակական-քաղաքական սիստեմների
խաղաղ գոյակցության մասին, նրանք հենվում են ոչ թե նրա վրա, որ իմ-
պերիալիզմը դադարել է ագրեսիվ լինելուց, այլ, նախ և առաջ և գլխավորա-
պես, նրա վրա, որ մեր ժամանակում խաղաղության ու սոցիալիզմի ուժերը ի
վիճակի են կապիտալիստական երկրներին պարտադրել խաղաղություն, խա-
ղաղ գոյակցություն, այդ բանին հասնել հակառակ ԱՄՆ-ի, Արևմտյան Գեր-
մանիայի, Ճապոնիայի և մյուս կապիտալիստական երկրների ագրեսիվ
ուժերի:

Եթե չլիներ սոցիալիստական լագերի երկրների հարաճուն տնտեսական ու
ռազմական հզորությունը, եթե չլինեին խաղաղասեր ժողովուրդների հնարավո-
րությունն ու ընդունակությունը՝ սանձահարելու ագրեսիան, ապա, իհարկե,
իմպերիալիստները կարող էին աշխարհը կրկին ներգրավել պատերազմի մեջ:
Ժամանակակից միջուկային զենքի առկայության պայմաններում երրորդ հա-
մաշխարհային պատերազմը (իսկ դա անխուսափելիորեն կդառնար միջուկա-
յին, ատոմային պատերազմ) կհանդիսանար սարսափելի աղետ, որի առաջ
կաղոտանային առաջին և նույնիսկ երկրորդ համաշխարհային պատերազմների
սարսափները: Ժողովուրդների առաջ հենց այդպիսի հեռանկար են բացում
իմպերիալիստական բուրժուազիայի առավել ագրեսիվ շրջանները: Միջազգա-
յին վեճերի լուծման միայն մի միջոց գիտեն նրանք՝ կոպիտ ռազմական ուժը:
Նրանք խոնարհվում են միայն ատոմային և ջրածնային ռումբերի առաջ: Եթե
լսենք նրանց, նշանակում է մարդկությունն ուրիշ մի այլ հեռանկար չունի,
բացի «սառը պատերազմից», այն «տաք պատերազմի» վերածելուց: Եվ, եթե
այն հարցի պատասխանը, թե անխուսափելի՞ է արդյոք պատերազմը, կախ-
ված լիներ միայն իմպերիալիստական բուրժուազիայից, ապա մարդկության
հեռանկարները տխրալի կլինեին: Բայց բանն էլ հենց այն է, որ պատերազմի ու
խաղաղության ճակատագիրը միայն իմպերիալիստներից չի կախված: Սո-
ցիալիստական լագերի երկրների մեծ դերը, աշխատավոր մասսաների, խա-
ղաղասեր ժողովուրդների աճող դերը այն վճռական գործոնն է, որը կարող է
մեր ժամանակում ապահովել խաղաղությունն ու ընդհանուր անվտանգու-
թյունը:

Մարքսիստ-դիալեկտիկը չի կարող աբստրահվել սոցիալիզմի ու խաղա-
ղության ուժերից, ռիսկ չանելով լքելու իրականության հողը, նա չի կարող
անտեսել պատմական այն կոնկրետ պայմաններն ու հնարավորությունները,
որոնք պատմության մեջ առաջին անգամ բացվել են ժողովուրդների առաջ
խաղաղության համար մղած պայքարում: Ո՛չ, մարդկությունը չի կարող



հաշտվել այն մռայլ հեռանկարի հետ, որպիսին պատկերում են պարոն իմպերիալիստները: ՍՄԿԿ XX և XXI համագումարների որոշումների, ինչպես նաև խաղաղության Դեկլարացիայի և Մանիֆեստի մեծ նշանակությունը նրանում էլ հենց կայանում է, որ դրանք, ցույց տալով ժամանակակից պայմաններում համաշխարհային պատերազմը խափանելու իրական հնարավորությունը, ժողովուրդների առաջ բացահայտեցին խաղաղության նոր, պարզ, հուսադրող հեռանկար: Հասկանալի է, այդ հնարավորությունը կարող է իրականացվել, իրապես դառնալ հաստատուն խաղաղություն ոչ թե ինքնահոսով, այլ պատերազմի հրձիգների դեմ ժողովուրդների մղած պայքարի հետևանքով, սոցիալիստական երկրների իմաստուն խաղաղասիրական քաղաքականության շնորհիվ, երկրներ, որոնք ձախողում են խաղաղության թշնամիների ագրեսիվ դիտավորությունները:

Այսօր չի կարելի խաղաղության համար հաջող պայքար մղել, սոսկ մեքենայաբար հենվելով իմպերիալիզմի դարաշրջանում պատերազմների անխուսափելիության վերաբերյալ դրույթի վրա: Այդ դրույթը հանդիսացավ իմպերիալիզմի գիտական վերլուծության արդյունք այն ժամանակաշրջանում, երբ նա համաշխարհային համապարփակ սիստեմ էր: Նա իր ուժը պահպանում էր նաև այն ժամանակ, երբ Սովետական Միությունը միակ սոցիալիստական երկիրն էր, գտնվելով թշնամական կապիտալիստական շրջապատման մեջ: Բայց այժմ, ինչպես արդեն նշվեց, դրությունն այլ է: Կապիտալիզմը դադարել է այնպիսի սիստեմ լինելուց, որից անպայման կախված լինի ժողովուրդների պատմական ճակատագիրը: Ներկայումս պատմական զարգացման ընթացքի վրա գնալով ավելի քան մեծ ազդեցություն է գործում համաշխարհային սոցիալիստական սիստեմը: Նշանակալից է, որ Վ. Ի. Լենինը կանխատեսել է պատերազմի և խաղաղության ճակատագրի վրա սոցիալիզմի երկրների վճռական ազդեցության հենց այդպիսի հնարավորություն: Դեռևս 1920 թվականին նա գրում էր. «...պրոլետարների դիկտատուրան ազգային (այսինքն՝ մի երկրում գոյություն ունեցող և համաշխարհային քաղաքականությունը որոշելու անընդունակ դիկտատուրայից) միջազգային (այսինքն՝ առնվազն մի քանի առաջավոր երկրների պրոլետարների դիկտատուրա, որն ընդունակ լինի վճռական ազդեցություն ունենալու ամբողջ համաշխարհային քաղաքականության վրա) վերածելու...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 169—170) տենդենցների մասին: Մի՞թե ներկայումս հենց այդպիսի դրություն չի ստեղծվել: Մի՞թե տարօրինակ չէ, որ Լենինի երկերից բերված առանձին ցիտատներից օգտվելու սիրահարները անցնում են Լենինի վերոհիշյալ սկզբունքային նշանակություն ունեցող արտահայտության կողքից:

Նոր պատմական պայմաններում պատերազմները կանխելու վերաբերյալ ՍՄԿԿ XX համագումարի խիստ գիտական հետևությունը և միջազգային քաղաքականության միջոցների թվից համաշխարհային պատերազմը բացառելու հնարավորության վերաբերյալ ՍՄԿԿ XXI համագումարի հետևությունը, խաղաղության Դեկլարացիան և Մանիֆեստը ժողովրդական մասսաներին ակտիվ պայքարի են մոբիլիզացնում հանուն խաղաղության և ելնում են խաղաղության մեծ գործը պաշտպանելու հնարավորության գործում ունեցած վստահությունից: Պատերազմը կանխելու հնարավորության վերաբերյալ տեսական ու քաղաքական նոր հետևությունները հենվում են խաղաղության համար մղվող պայքարի նոր պայմանների նկատառմամբ մարքսիզմ-լենինիզմի մեթոդի ստեղ-

ծագործական կիրառման վրա։ Խաղաղության և սոցիալիզմի օգտին ուժերի գերակշռությունը, անտարակույս, է՛լ ավելի զգալի կլինի սովետական յոթնամյակի և մյուս սոցիալիստական պետությունների տնտեսական պլանների կատարումից հետո։ Այդ պլանների կենսագործումը կհասցնի այն բանին, որ սոցիալիստական երկրները կարտադրեն համաշխարհային արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին։ Սոցիալիստական լագերի գերազանցությունը այնքան ակնհայտ կլինի, որ նույնիսկ ամենալկտի իմպերիալիստների, այդ թվում մեր օրերի Ֆորեստոլների համար պարզ կդառնա, որ սոցիալիզմի երկրները խորտակելու նրանց փորձերը անհուսալի են։ Այդ ամենը կհասցնի նրան, ասել է Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ XXI համագումարում, որ «...մինչև սոցիալիզմի լիակատար հաղթանակը երկրագնդի վրա՝ աշխարհի մի մասում կապիտալիզմի պահպանման պայմաններում իրական հնարավորություն կառաջանա համաշխարհային պատերազմը բացառել հասարակության կյանքից»։

Այդ հնարավորությունը չտեսնել կարող են միայն այն մարդիկ, որոնք անընդունակ են հայացք գցել պատմական հեռանկարի վրա։ Բայց չէ՞ որ քաղաքագետի արվեստն էլ հենց այն է, որ նա նայի դեպի առաջ, և ոչ թե դեպի ետ. կանխատեսի այն, ինչ լինելու է ո՛չ միայն վաղը և վաղը չէ մյուս օրը, այլև 7—10 տարի հետո, որսա զարգացման գլխավոր տենդենցը, նկատի այն նորը, ինչ աճում է ու զարգանում և որից վճռական չափով կախված է աշխարհի բախտը։ Հենց այդ ամենն էլ սովորեցնում է մատերիալիստական դիալեկտիկան։

Այնտեղ, ուր մետաֆիզիկական մտածողությունը տեսնում է լճացած, քարացած, մեկուսացած երևույթներ ու առարկաներ, դիալեկտիկան տեսնում է մեծ դինամիկ ամբողջություն, կյանքով ու շարժումով լի, պայքարով ու հակասություններով լի աշխարհի անընդհատ փոփոխվող պատկերը։ Պատմական իրականության նկատմամբ միայն այդպիսի մոտեցումն է թույլ տալիս հաշվի առնել պատմական ասպարեզում գործող բոլոր կողմերը, բոլոր գործոնները։ Դա էական նախադրյալ է ճիշտ որոշելու համար բոլոր հարցերը, այդ թվում նաև պատերազմի և խաղաղության, նոր համաշխարհային պատերազմը կանխելու հնարավորության, հասարակության կյանքից համաշխարհային պատերազմը բացառելու հնարավորության հարցը։ «Ներկայումս խաղաղության ուժերն այնքան են աճել, որ իրական հնարավորություն կա կանխելու պատերազմը»,— արդարացի և ծանրակշիռ կերպով ասված է այն Դեկլարացիայում, որ ընդունված է սոցիալիստական պետությունների բոլոր կոմունիստական ու բանվորական պարտիաների կողմից և որին լիովին հավանություն են տվել կապիտալիստական երկրների կոմպարտիաները։

Այն տեսակետը, որը գտնում է, թե ժամանակակից պայմաններում պատերազմն անխուսափելի է, նշանակում է պատմական մատերիալիզմի դիրքերից սահել ֆատալիզմի դիրքերը։ Նման տեսակի ֆատալիստական-հոռետեսական հայացքը ընդունակ է միայն վիժեցնել ժողովուրդների հավատը և դրանով թուլացնել պայքարը սոսկալի աղետի՝ միջուկային պատերազմի դեմ։

«Կարող են ասել,—նշել է Ն. Ս. Խրուշչովը,—չէ՞ որ կապիտալիզմը մնում է, իսկ նշանակում է, մնում են նաև այնպիսի ավանտյուրիստներ, որոնք կարող են պատերազմ սկսել։ Դա ճիշտ է, և այդ մասին չի կարելի մոռանալ»։ Ագրեսիվ պետությունները, ագրեսիվ ուժերը դեռևս ունեն մեծ հզորություն, ժողովուրդներին խաբելու և նրանց պատերազմի մեջ քաշելու մեծ փորձ։ Իմ-



պերիալիստների կողմից հափշտակողական պատերազմներ նախապատրաստելու գաղտնիքները պետք է սիստեմատիկաբար և անդադար մերկացվեն։ Այդպիսին է խաղաղության համար մղվող պայքարի կարևորագույն խնդիրներից մեկը։ Ժողովուրդները պետք է զգոն լինեն, և կոմունիստական ու բանվորական պարտիաների սրբազան պարտականությունն է նրանց դաստիարակել այդ զգոնությամբ։

Մեր դարաշրջանում պատերազմների ճակատագրական անխուսափելիություն չլինելու մասին մարքսիստական նոր դրույթը ներքնապես կապված է տարբեր հասարակական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության մասին լենինյան տեսության հետ։

Երբ հաղթականորեն ավարտվեց քաղաքացիական պատերազմը, երբ օտարերկրյա ինտերվենտներն ու սպիտակգվարդիականները ջախջախվեցին ու դուրս քշվեցին Կարմիր Բանակի կողմից, հերթական հարց դարձավ տարբեր՝ սոցիալիստական և կապիտալիստական կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորության հարցը։

Իսկ ինչպիսի՞ հեռանկարներ էին բացվել Սովետների Ռեսպուբլիկայի առաջ, որը գտնվում էր թշնամական շրջապատման մեջ։ Տրոցկիստները պնդում էին մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի անհնարինության մասին, պահպանողական և հակառևոլյուցիոն Եվրոպային դիմակայելու անհնարինության մասին։ Նրանք մեր երկիրը հրում էին դեպի ռազմական ավանտյուրաների ուղին, դեպի «ռևոլյուցիայի արտածման» ուղին։ Պարտիան Լենինի գլխավորությամբ մերժեց տրոցկիստական ավանտյուրիստական գիծը։ Ի հակակշիռ նրանց Լենինը պարտիայի և սովետական ժողովրդի առաջ բացեց Սովետական Միությունում սոցիալիզմի հաղթանակի պարզ հեռանկարը կապիտալիստական շրջապատման պայմաններում։ Լենինը գտնում էր, որ Սովետական ռեսպուբլիկան հետագայում համաշխարհային պատմության ընթացքի վրա կներգործի նախ և առաջ իր տնտեսական հաջողություններով։

«Այժմ,—գրում էր նա,—միջազգային ռևոլյուցիայի վրա մեր գլխավոր ներգործությունը ցույց ենք տալիս մեր տնտեսական քաղաքականությամբ... Այդ ասպարեզն է փոխադրվել պայքարը համաշխարհային մասշտաբով։ Կլուծենք մենք այդ հարցը—և այն ժամանակ մենք շահել ենք միջազգային մասշտաբով հաստատապես և վերջնականապես»։ Այդ դրույթը բխում էր տարբեր հասարակական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորությունների հաշվառումից։ Պատասխանելով «Նյու-Յորքի Երեկոյան Թերթ»-ի թղթակցի այն հարցին, թե Սովետական Ռուսաստանն ինչ պլաններ ունի Ասիայում, Լենինն ասել է.

«Նույնն են, ինչ որ Եվրոպայում. այն է՝ խաղաղ համակեցություն բոլոր ազգերի ժողովուրդների բանվորների և գյուղացիների հետ...» (Երկեր, հ. 30 էջ 464)։

Խաղաղ գոյակցության վերաբերյալ լենինյան գաղափարներն ընկան երիտասարդ սոցիալիստական ռեսպուբլիկայի արտաքին քաղաքականության գծով նրա գործունեության հիմքում։ Ջենովայում միջազգային կոնֆերենցիայի բացմանը սովետական պատվիրակությունը հայտարարեց. «Մնալով կոմունիզմի սկզբունքների տեսակետին, Ռուսաստանի պատվիրակությունն ընդունում է, որ ներկայիս պատմական դարաշրջանում, որը հնարավոր է դարձնում հին և առաջացող նոր սոցիալական կարգի զուգահեռ գոյությունը,



2 «Լենինյան ուղիով», № 9

սեփականության այդ երկու սիստեմները ներկայացնող պետությունների միջև տնտեսական համագործակցությունը հրամայաբար անհրաժեշտ է...»։ Այդպես էին դնում հարցը Լենինն ու լենինյանները Սովետական իշխանության առաջին տարիներին։

Եթե Լենինն այդ գիծը ճիշտ էր համարում այն ժամանակ, երբ Սովետական ռեսպուբլիկան դեռևս թույլ էր և միայնակ, ապա այդ գիծն առավել ևս ճիշտ է այսօր, երբ գոյություն ունի համաշխարհային սոցիալիստական սիստեմ, երբ աճել ու ամրացել է միջազգային բանվորական և ազգային-ազատագրական շարժումը, երբ վիթխարիորեն աճել է ժողովրդական մասսաների դերը։

Խաղաղ գոյակցության լենինյան տեսությունը ալտերնատիվ է միջուկային, ատոմային պատերազմին, որն աղետալի հետևանքներ է բերում ժողովրդին։ Մեր պարտիայի, նրա Կենտկոմի և ընկեր Խրուշչովի աչքի ընկնող ծառայությունը կայանում է նրանում, որ նրանք այդ տեսությունը է՛լ ավելի բազմակողմանիորեն հիմնավորեցին ու զարգացրին։

Կոմունիզմի բուրժուական քննադատները, ինչպիսին Դալլեսն է, ՍՍՌՄ-ում ամերիկյան նախկին դեսպան Կեննանը, կաթոլիկական աստվածաբան Վետտերը և ուրիշներ, պնդում են, թե իբր խաղաղ գոյակցության տեսությունը ամենևին էլ Լենինին չի պատկանում, թե իբր Լենինը կանգնած է եղել պատերազմների անխուսափելիության դիրքերի վրա։ Այդ մարդիկ, որոնք մարքսիստներին մեղադրում են դոգմատիզմի և դոկտրինյորության մեջ, իրենք, որպես դպրոցականներ, Լենինի երկերից պոկում են առանձին ցիտատներ և ամբողջ աշխարհով մեկ աղմկում, թե, իբր, Լենինը դեմ էր խաղաղ գոյակցության քաղաքականությանը։ Որ դալլեսները, կեննանները, վետտերները այդպես են վարվում, դա հասկանալի է։ Բայց տարօրինակ կլիներ, եթե մարքսիստը երբևէ կարծեր, թե խաղաղ գոյակցության տեսությունը համարյա թե հակասում է լենինիզմին և իբր թե նշանակում է հրաժարումն կապիտալիզմի դեմ պայքարելուց, դասակարգային պայքարի տեսությունից։ Անպայման մոլորվում են նրանք, ովքեր մտածում են, թե ժամանակակից պայմաններում համաշխարհային պատերազմը խափանելու հնարավորության վերաբերյալ ֆորմուլան, ինչպես նաև սոցիալիստական պետությունների կողմից կենսագործվող խաղաղ գոյակցության տեսությունն ու քաղաքականությունն, իբր թե, ընդունակ են ժողովրդին գաղափարապես զինաթափել ու դեմոբիլիզացիայի ենթարկել ագրեսիվ իմպերիալիստական ուժերի առաջ։

Ռևիզիոնիստները խաղաղ գոյակցությունն ըմբռնում են որպես հրաժարում իմպերիալիզմի դեմ պայքարելուց, որպես կապիտուլյացիա նրա առաջ։ Մարքսիստ-լենինյանները խաղաղ գոյակցությունն ըմբռնում են որպես հրաժարում պատերազմից՝ իբրև վեճերի լուծման միջոցի, նրանք հանդես են գալիս հօգուտ այն բանի, որ բոլոր հարցերը լուծվեն բանակցությունների միջոցով։ Դրա հետ միասին նրանք քաղաքական ու գաղափարական անդադրում պայքար են տանում իմպերիալիզմի դեմ։

Պարոն կապիտալիստներն ու ռեֆորմիստներն ուզում են, որ Սովետական Միությունը, մեր պարտիան կապիտալիստական երկրներն ապահովեն դասակարգային պայքարից, ռևոլյուցիայից։ Բայց այդպիսի երաշխիք Սովետական Միությունը ոչ ոքի չի տվել և տալ չի կարող։ Յուրաքանչյուր կապիտալիստական պետության ներսում դասակարգային պայքարն ու ռևոլյուցիան մեր



կամքից անկախ՝ հակամարտ հասարակության զարգացման օրենքներ են։ Ռևոլյուցիան ժողովուրդների ներքին գործն է։ Ռևոլյուցիան, դասակարգային պայքարը եղել են և կլինեն, քանի դեռ աշխարհում կան մարդու շահագործում մարդու կողմից, հակամարտ դասակարգեր, ազգային կեղեքում։ Որպեսզի չքանան դասակարգային պայքարը, ռևոլյուցիաները, ազգային-ազատագրական շարժումները, հարկավոր է վերացնել, ոչնչացնել դրանք առաջացնող պատճառներն ու պայմանները։

Տարբեր հասարակական կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը և հակադիր դասակարգերի «խաղաղ գոյակցության» բուրժուական տեսությունը միմյանց հետ ընդհանուր ոչինչ չունեն։ Առաջինը առաջ է քաշվել Լենինի և լենինյանների կողմից և համապատասխանում է ժողովուրդների արմատական շահերին։ Երկրորդն ստեղծվել է բուրժուազիայի ռեֆորմիստների և ռևիզիոնիստների կողմից։ Այն թշնամի է լենինիզմին, բանվոր դասակարգին։ Առաջին տեսությունն իրական է, կենդանի և գիտականորեն հիմնավորված։ Երկրորդ տեսությունը անկենսունակ է, այն մետաֆիզիկական է և ուտոպիական։

Տարբեր հասարակական կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցության տեսությունը ենթադրում է որոշ համաձայնություններ, փոխադարձ զիջումներ և նույնիսկ որոշ կոմպրոմիսներ։ Հնարավո՞ր են արդյոք փոխադարձ զիջումները, կոմպրոմիսները։ Ո՛չ, ընդհանրապես ոչ մի կոմպրոմիս հնարավոր չէ, 20-ական թվականներին պատասխանում էին «ձախ» տարրերը կոմունիստական պարտիաների շարքերում։ Այո՛, հնարավոր է, թույլատրելի, պատասխանում էր Լենինը, եթե այն ժողովուրդների միջև խաղաղության շահերի օգտին է, աշխատավորների շահերի օգտին, սոցիալիզմի համար մասսաներին մոբիլիզացնելու շահերի օգտին։

Խաղաղության, խաղաղ գոյակցության համար մղվող պայքարի կարևորագույն պայման է հանդիսանում ընդհանուր և լիակատար զինաթափման, միջուկային զենքի արգելման պրոբլեմի լուծումը։ Լիակատար և ընդհանուր զինաթափման համար Սովետական Միությունը համաձայնել և համաձայնում է մի ամբողջ շարք զիջումների, կոմպրոմիսային առաջարկությունների։ Ուրիշ կերպ հնարավոր չէ համաձայնության գալ զինաթափման մասին։

Սովետական Միությունը մտցրեց ընդհանուր և լիակատար զինաթափման մասին առաջարկություն, որն արտահայտում է խաղաղության նրա հետևողական քաղաքականությունը։ Իմպերիալիստական պետությունները զինաթափման հարցում դես ու դեն են ընկնում, պոչ են խաղացնում, խուսանավում։ Նրանք արդեն մեկ անգամ չէ, որ հրաժարվել են իրենց իսկ առաջ քաշած առաջարկություններից, հենց որ Սովետական Միությունը ընդունում էր այդ առաջարկությունները։ Բայց աշխարհի ժողովուրդները հետևում են թե՛ մեր քաղաքականությանը զինաթափման բնագավառում, թե՛ բուրժուական կառավարությունների քաղաքականությանը, տակտիկային, խուսափանքներին։ Բուրժուական կառավարությունները ժողովուրդների առաջ իրենց մերկացնում են որպես զինաթափման թշնամիների և, հետևապես, որպես խաղաղության թշնամիների։ Խաղաղության համար, զինաթափման համար մղվող պայքարի հարցեր, մի կողմից՝ սպառազինման մրցավազքի, շահույթների ու պատերազմների մեջ շահագրգռված ագրեսիվ ուժերի, մյուս կողմից՝ անկեղծորեն լիակատար ու ընդհանուր զինաթափման ձգտող խաղաղության

ու սոցիալիզմի ուժերի միջև մղվող պայքարի հարցերն են։

Ժողովուրդներին, խաղաղության բոլոր ուժերին արդյոք կհաջողվի՞ բուրժուական կառավարություններին ստիպել համաձայնել զինաթափմանը։ Դա կախված է մասսաների պայքարի թափից։ Այստեղ ևս մեծ դեր է պատկանում իմպերիալիստների ագրեսիվ դիտավորությունները մերկացնող ու վիժեցնող սոցիալիստական պետությունների խաղաղասիրական քաղաքականությանը։ Չի կարելի պայքարել հանուն սոցիալիզմի, հետևողական պայքար չմղելով խաղաղության համար։ Այդ պատճառով էլ «կոմունիստական պարտիաները խաղաղության համար մղվող պայքարը դիտում են որպես իրենց առաջնահերթ խնդիրը»,— արդարացիորեն ասվում է կոմունիստական և բանվորական պարտիաների Դեկլարացիայում։

Խաղաղության համար մղվող պայքարը իրենից ներկայացնում է ավելի լայն ճակատ, որն իր մեջ ընդգրկում է նաև այնպիսի մարդկանց, ովքեր սոցիալիզմի կողմնակիցներ չեն։ Այնուամենայնիվ խաղաղության համար, ընդդեմ ագրեսիվ իմպերիալիստական ուժերի մղվող պայքարը ներքնապես կապված է սոցիալիզմի համար մղվող պայքարի հետ։ Խաղաղության համար մղվող պայքարը, որը համապատասխանում է ժողովուրդների կենսական շահերին, կապիտալիստական երկրների ամենալայն աշխատավոր մասսաներին մոտեցնում է սոցիալիստական վերափոխման համար մղվող պայքարին։

Այն բանի սքանչելի օրինակը, թե ինչպես պետք է կարողանալ խաղաղության համար, խաղաղ գոյակցության համար պայքարը լենինաբար ի մի բերել սոցիալիզմի համար մղվող պայքարի հետ, հանդիսանում են Ն. Ս. Խրուշչովի ելույթները, նրա ուղևորություններն արտասահման՝ խաղաղության միսիայով։ Նրա վերջին ուղևորությունը Ավստրիա, ավստրիացիների վերաբերմունքը ՍՍՌՄ պատվիրակի ելույթներին, կրկին անգամ ցույց տվեցին, թե խաղաղության գաղափարը որքան ժողովրդական է ավստրիական ժողովրդի ամենատարբեր խավերում։ Արդի դարաշրջանում սոցիալիստական լագերը այն վճռական գործոնն է, որն ընդունակ է առաջադիմական բոլոր ուժերի համագործակցությամբ միլիոնավոր մարդկանց փրկել բնաջնջումից, ռադիոակտիվ նյութերի տրոհման հետևանքներից, կործանումից փրկել մարդկային հանճարի անգնահատելի ստեղծագործությունները, շատ ու շատ սերունդների աշխատանքային գործունեության պտուղները։

Այսպիսով, ուժերի հարաբերակցության արմատական փոփոխությունը հօգուտ խաղաղության ու սոցիալիզմի, սոցիալիստական երկրների հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը, սոցիալիստական լագերի ամրապնդվող միասնությունն ու հզորությունը, ՍՍՌՄ-ում ժամանակակից տեխնիկայի առկայությունը, բոլոր ժողովուրդների պայքարը հանուն խաղաղության՝ ահա այն գլխավոր գործոնները, որոնք պետք է հաշվի առնի մարքսիստը պատերազմի և խաղաղության հարցերը քննարկելիս։ Կասկած չկա, որ ժամանակակից ռազմական տեխնիկայի (ատոմային, ջրածնային ռումբերի և հրթիռների) ծայրահեղ կործանիչ և մահաբեր բնույթը վերոհիշյալ պայմանների առկայությամբ կարող են խաղաղության և սոցիալիզմի ձեռքին ծառայել որպես գործոն՝ իմպերիալիստների կողմից նոր պատերազմի սանձազերծման դեմ։ Ըստ Ն. Կ. Կրուպսկայայի հիշողությունների Վ. Ի. Լենինը կանխատեսում էր այնպիսի ժամանակների մոտեցման հնարավորությունը, երբ ռազմական տեխնիկայի զարգացումը կհասցնի այն բանին, որ պատերազմը կլինի



«...այնքան կործանիչ, որ նա ընդհանրապես անհնարին կդառնա»։ «Երևում էր,— գրում էր Կրուպսկայան,— թե նա ինչպես էր կրքոտ կերպով ցանկանում, որ պատերազմն անհնարին դառնա»։

## III

Մարդկությանը հուզող կարևորագույն հարցերից մեկը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ուղիների ու ձևերի հարցն է։ Մարքսիզմ-լենինիզմը սկզբունքորեն բացառում է պետությունների միջև տեղի ունեցող պատերազմների միջոցով սոցիալիզմ մուծելը, կամ, ինչպես ընդունված է անվանել՝ «ռևոլյուցիայի էքսպորտը»։ «Չի կարելի,— նշում է Ն. Ս. Խրուշչովը,— մարդկանց դեպի կոմունիզմ քշել պատերազմի օգնությամբ։ Հարկավոր է, որպեսզի մարդիկ գիտակցեն կապիտալիստական հասարակությունը կոմունիստական հասարակությամբ փոխելու անհրաժեշտությունը։ Չէ որ խելագարություն է դեպի նորը, դեպի լավագույն հասարակարգը պատերազմի միջոցով գնալը»։ Այս կամ այն հասարակական-քաղաքական կարգն ընտրելը կամայականության արդյունք չէ։ Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը պայմանավորված է օբյեկտիվ օրենքներով ու պատճառներով և հանդիսանում է յուրաքանչյուր ժողովրդի ներքին գործը, նրա պայքարի արդյունքը։ Բայց կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ինչպիսի՞ ձևեր կան մեր ժամանակակից դարաշրջանում։ Բոլո՞ր դեպքերում է արդյոք այդ անցումը կապված զինված ապստամբության ու քաղաքացիական պատերազմի հետ։

Այս կամ այն երկրում խաղաղ կերպով սոցիալիզմին անցնելու հնարավորության թույլատրելիությունը արդյոք զինված թշնամու հանդեպ շահագործվող մասսաներին գաղափարապես զինաթափելու, նրանց օրորելով քնեցնելու, անիրագործելի պատրանքներով թմրեցնելու որոշ վտանգ չի՞ նշանակում։ Այդպիսի երկյուղը օրինական կլիներ, եթե հաշվի չառնեինք հետպատերազմյան ժամանակաշրջանում աշխարհում կատարված խոր տեղաշարժերը, կապիտալիզմի և սոցիալիզմի միջև ուժերի նոր հարաբերակցությունը, սոցիալիզմի համար բանվոր դասակարգի պայքարի ավելի բարենպաստ պայմանները։

Մի՞թե պարզ չէ, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կապիտալիզմի և սոցիալիզմի միջև ուժերի փոփոխված հարաբերակցությունը մեծացրել է խաղաղ կերպով առաջինից երկրորդին անցնելու հնարավորությունը։ Իմպերիալիզմը գնալով ավելի բացահայտորեն է դրսևորում իր թշնամական վերաբերմունքը ամենալայն ժողովրդական մասսաների նկատմամբ։ Կապիտալիզմը ժողովրդի ուսերին է դրել միլիտարիզմի ամենածանր բեռը, բանվորների բուն իսկ գոյությունը կախման մեջ է դրել մարդասպանդային արդյունաբերության վիճակից։ Կապիտալիստական երկրներում միլիոնավոր մարդիկ սկսել են ավելի ու ավելի խոր գիտակցել, որ հարստություն դիզելու սատանայական մոլուցքով բռնված մոնոպոլիաները և նրանց ծառայող բուրժուական պետությունները վարում են բացահայտ հակաժողովրդական քաղաքականություն։ Բազմամիլիոն մասսաները ներկայումս միևնույն ժամանակ հնարավորություն ունեն համոզվելու, որ սոցիալիզմը անխզելիորեն կապված է խաղաղության, մարդկանց աճող բարեկեցության, իսկական ազատության պաշտպանության, իսկական դեմոկրատական իրավունքների զարգացման

հետ: Այդ իրադրության մեջ որոշ երկրներում կոմունիստական և բանվորական պարտիաները, հենվելով մասսաների ռևոլյուցիոն շարժման վրա, ավելի, քան երբեք, հնարավորություն ունեն բուրժուազիային ստիպելու կապիտուլյացիայի ենթարկվել առանց արյունհեղության, առանց զինված ապստամբության ու քաղաքացիական պատերազմների:

Լենինը գրում էր. «Նոր քաղաքական (և ոչ միայն քաղաքական) գաղափարը վարկաբեկելու և դրան վնասելու ամենաճիշտ միջոցը կայանում է նրանում, որ հանուն դրա պաշտպանության այն հասցվի մինչև անհեթեթության: Որովհետև ամեն մի ճշմարտություն, եթե այն դարձվի «չափից դուրս» (ինչպես ասում էր Դիցգեն-հայրը), եթե այն չափազանցվի, եթե այն տարածվի նրա իրական կիրառելիության սահմաններից դուրս, կարելի է հասցնել անհեթեթության, և այդ գաղափարը մատնանշված պայմաններում, նույնիսկ անխուսափելիորեն, դառնում է անհեթեթություն»:

Այդ կապակցությամբ վերցնենք բռնության հարցը: Հայտնի է, որ պրոլետարիատի և բոլոր աշխատավորների նկատմամբ բուրժուազիայի բռնության դերը իմպերիալիզմի դարաշրջանում աճել է: Աճել է բուրժուական բռնության պետական ապարատը՝ բանակը, զորքը, ոստիկանությունը, ժանդարմերիան, հետախուզությունը, դատարանները, ֆաշիստացող սրիկա-ավազակների հատուկ ջոկատները և այլն: Երբ բուրժուազիան ապստամբած պրոլետարիատի դեմ գործի է գցում իր զինված ուժերը, ապա այդ պայմաններում պրոլետարիատը ևս կարող է և պետք է իր դասակարգային թշնամու դեմ գործադրի ռևոլյուցիոն պայքարի համապատասխան մեթոդներ և ձևեր: Թշնամու զենքին պետք է հակադրել զենք: Ռուսաստանում պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճումը հնարավոր դարձավ միայն բռնի, զինված եղանակով:

Բայց Լենինն ու բոլշևիկները 1917 թվականին, Փետրվարյան ռևոլյուցիայից հետո, այն ժամանակ պրոլետարիատի համար ստեղծված բարենպաստ պայմաններում հնարավոր էին համարում իշխանության խաղաղ անցումը պրոլետարիատի ձեռքը: Դժբախտաբար, պայմանները արագությամբ փոխվեցին, և դա տեղի չունեցավ: Սակայն Լենինը և բոլշևիկները, ռևոլյուցիոն բռնության կողմնակիցները չէին բացառում այդպիսի հնարավորությունը, ընդորում երկու անգամ 1917 թվականին: 1918 թվականին Հունգարիայում խաղաղ ճանապարհով հաստատվեց Սովետական իշխանություն, իրագործվեց իշխանության խաղաղ անցումը պրոլետարիատի ձեռքը: Լենինը ողջունեց այդ անցումը:

Առանձին երկրներում խաղաղ կերպով սոցիալիզմին անցնելու հնարավորության պաշտպանությունը ամենևին չի նշանակում հրաժարում մարքսիստական այն դրույթից, որի համաձայն բուրժուազիան իշխանությունը երբեք կամովին չի հանձնի: Ինքնըստինքյան հասկանալի է, որ այս կամ այն երկրի բուրժուազիայի հնարավոր հրաժարումը սոցիալիստական ռևոլյուցիայի զինված ճնշումից պայմանավորված կլինի ոչ թե իմպերիալիստական բնույթի փոփոխումով, ոչ թե նրանց հումանիստական նկատառումներով, այլ ուժերի այն հսկայական գերակշռությամբ, որպիսին ժամանակակից պայմաններում բանվոր դասակարգն ու նրա դաշնակիցները ընդունակ են ստեղծել առանձին կապիտալիստական երկրներում: Այստեղից հետևում է, որ խաղաղ կերպով սոցիալիզմին անցնելու հնարավորությունը կապված է կապիտալիզմի դեմ մըղ-



վող ակտիվ, հարաճուն ռևոլյուցիոն պայքարի, մոնոպոլիաների կողմից կեղեքվող սոցիալական բոլոր խավերի ուժերի մոբիլիզացման, հակամարտ դասակարգերի օպորտունիստական հաշտեցման փորձերը վճռականապես մերկացնելու հետ:

Նա, ով հակված է խաղաղ ճանապարհով սոցիալիզմին անցնելու հնարավորության մարքսիստական դրույթը մերձեցնել սոցիալիզմի մեջ կապիտալիզմի խաղաղ ներաճման վերաբերյալ օպորտունիստական, ռևիզիոնիստական հերյուրանքների հետ, լուրջյան է մատնում այն ճշմարտությունը, որ մարքսիստական կոնցեպցիան ելնում է պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու միջոցով մի հասարակարգից ռևոլյուցիոն ճանապարհով մյուսին անցնելու անհրաժեշտությունից, այն ժամանակ, երբ օպորտունիստական տեսությունները, ըստ էության, հանում են կապիտալիստական հարաբերությունների վերացման հարցը և մտահոգված են սոսկ նրանց «կատարելագործումով»:

Ինչպես նշել է Ն. Ս. Խրուշչովը, ստեղծված պայմանների շնորհիվ Ռուսաստանում բացառված էր սոցիալիզմին անցնելու համար պառլամենտական ուղիների օգտագործման հնարավորությունը: Բայց դիալեկտիկայի զարգացումն այնպիսին է, որ պատմական որոշ իրադրության մեջ անհնարինը հնարավոր է դառնում այլ պայմաններում: ՍՄԿՊ XX համագումարը միանգամայն հստակորեն ընդգծեց, որ խաղաղ անցումը սոցիալիզմին կապված է ոչ միայն պառլամենտում կայուն մեծամասնություն նվաճելու հետ, այլև նրա հետ, որ այդ մեծամասնությունը պետք է հենվի աշխատավորների մասսայական շարժման վրա պրոլետարիատի քաղաքական ղեկավարության պայմաններում՝ նրա ռևոլյուցիոն ավանգարդի գլխավորությամբ:

«Տարբեր երկրների՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ձևերը կարող են բազմազան լինել,— ասվում է կոմունիստական և բանվորական պարտիաների Դեկլարացիայում:— Բանվոր դասակարգն ու նրա ավանգարդը՝ մարքսիստական-լենինյան պարտիան, ձգտում են սոցիալիստական ռևոլյուցիան կենսագործել խաղաղ եղանակով: Այդ հնարավորության կենսագործումը կհամապատասխաներ բանվոր դասակարգի շահերին և երկրի ընդհանուր-ազգային շահերին:

Ժամանակակից պայմաններում մի շարք կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգը իր առաջավոր ջոկատի ղեկավարությամբ հնարավորություն ունի բանվորական ու ժողովրդական ճակատի և տարբեր պարտիաների ու հասարակական կազմակերպությունների համաձայնության ու քաղաքական համագործակցության մյուս հնարավոր ձևերի հիման վրա միավորել ժողովրդի միասնությունը, նվաճել պետական իշխանությունը առանց քաղաքացիական պատերազմի և ապահովել արտադրության հիմնական միջոցների անցումը ժողովրդի ձեռքը»:

Դրա հետ միասին պետք է ընդգծել, որ տարբեր երկրների կողմից սոցիալիզմին անցնելու ձևերի մասին ՍՄԿՊ XX համագումարի և կոմունիստական ու բանվորական պարտիաների Դեկլարացիայի դրույթները խաղաղ ուղին ամենևին էլ միակը չեն հռչակել: Ընդհակառակը, համագումարը նշեց, որ մի շարք կապիտալիստական երկրներում, որտեղ մոնոպոլիստական բուրժուազիայի ռազմա-քաղաքական ապարատը ուժեղ է, պետք է պատրաստ լինել այն բանին, որ նա կփորձի ժողովրդի կամքը ճնշել և դրանով իսկ նրան հարկադրել անցնելու դասակարգային պայքարի ամենասուր ձևերի:

Նրանք, ովքեր փորձում են բացառել մի շարք կապիտալիստական երկրներում խաղաղ անցումը սոցիալիզմին, հաշվի չեն առնում այն բոլոր փոփոխությունները, որ կատարվել են աշխարհում։ Այդպիսի մոտեցումը կարող է պառակտմնորոշել մի շարք կոմունիստական ու բանվորական պարտիաների, այդ պարտիաներին կտրել մասսաներից, պառլամենտական կայուն մեծամասնություն նվաճելու համար մղվող պայքարից և կարող է նրանց հրել ադանդավորության ու դոգմատիզմի դիրքը։

Այսպիսով, բանվոր դասակարգն ու նրա պարտիան պետք է տիրապետեն պայքարի բոլոր միջոցներին ու ձևերին։ Իսկ թե նա նրանցից ո՛րը պետք է օգտագործի, գործի գցի, դա կախված է պայքարի կոնկրետ պայմաններից յուրաքանչյուր կապիտալիստական երկրում։ Այդ է սովորեցնում մարքսիստական դիալեկտիկան՝ սոցիալիզմի համար մղվող պայքարի ստրատեգիայի և տակտիկայի բնագավառում նրա կիրառումը։

***

«Մարքսիզմի ամբողջ ոգին, նրա ամբողջ սիստեմը պահանջում են, որ յուրաքանչյուր դրույթ քննարկվի միայն (a) պատմականորեն. (b) միայն մյուսների հետ կապակցության մեջ. (v) միայն պատմության կոնկրետ փորձի հետ կապակցության մեջ»,—այսպես է ասել Լենինը՝ ռևոլյուցիոն դիալեկտիկայի մեծագույն վարպետը։

Մեր ժամանակի ամենաբարդ հարցերի մասին դատողություններ անել միայն առանձին ցիտատներ բերելով մարքսիզմի կլասիկների աշխատություններից և ընդամին «մոռանալ» Լենինի այն գլխավոր ցուցումը, որ «ճշմարտությունը միշտ կոնկրետ է», նշանակում է խախտել դիալեկտիկայի սկզբունքները, գլոջում անել մտածողության մետաֆիզիկական սահմանափակ մեթոդին։

Դիալեկտիկան պահանջում է պատմական մոտեցում իմացության ու պրակտիկայի նկատմամբ։ Դա նշանակում է, որ լուծելով մեր ժամանակների հրատապ պրոբլեմները, պետք է տեսնել փոփոխվող, և ոչ թե քարացած աշխարհը, նկատել հասարակական ուժերի դասավորության մեջ կատարված տեղաշարժերը, հաշվի առնել սոցիալիզմի աճումը և կապիտալիզմի մայրամուտը։

Դիալեկտիկան պահանջում է երևույթների ընդհանուր փոխադարձ կապի հաշվառում։ Դա նշանակում է, որ անհնարին է ճիշտ քաղաքական գիծ մշակել, եթե տեսնենք միայն իմպերիալիզմի անփոփոխ բնույթը և չտեսնենք այն, թե իրադարձությունների ընթացքի վրա ինչպիսի ազդեցություն է թողնում աշխարհում կատարված և կատարվող սոցիալական փոփոխությունների ամբողջականությունը։

Դիալեկտիկան պահանջում է պատմության փորձի հաշվառում։ Իսկ դա անհամատեղելի է սերտած ֆորմուլաների վերացական օգտագործման հետ։

Ռևոլյուցիոն բանվոր դասակարգին, ռևոլյուցիոն մարքսիստական պարտիային, ռևոլյուցիոն դարաշրջանին համապատասխանում է ամենառևոլյուցիոն տեսական զենքը՝ մարքսիստական մատերիալիստական դիալեկտիկան։ Նա մերժում է ամեն մի անշարժություն, պահպանողականություն, քարացածություն իրականության և մտածողության մեջ, գիտակցության մեջ, տեսական բնագավառում։ Դիալեկտիկան ճանաչում և լուսավորում է հավիտենական, անընդհատ շարժումը դեպի առաջ, մեր ժամանակների ամենաառաջավոր դասակարգի՝ բանվոր դասակարգի և նրա մարքսիստական պարտիայի անձնուրաց, համարձակ ռևոլյուցիոն պայքարը։

Խաղաղության համար, պատերազմի դեմ մղվող պայքարում, սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում մարքսիստական պարտիաները պետք է, պարտավոր են օգտագործել կապիտալիստական երկրների, ագրեսիվ և ոչ ագրեսիվ պետությունների միջև եղած հակասությունները, օգտագործել բուրժուազիայի տարբեր խավերի միջև եղած հակասությունները։ Այդպես է սովորեցրել մեր պարտիային Լենինը, ելնելով դիալեկտիկայի սկզբունքներից ու օրենքներից։

Խաղաղության և կոմունիզմի համար մղվող պայքարում վճռական նշանակություն է ունեցել և ունի սոցիալիստական երկրների միասնությունը։ Ժողովրդի միջև խաղաղության մարտիկները, կոմունիզմի մարտիկները երբեք չպետք է մոռանան ժամանակակից պատմության այդ նոր, մեծագույն շարժիչ ուժի մասին։ Ամեն ոք, ով կամա թե ակամա թուլացնում է այդ միասնությունը, նա չի օգնում խաղաղության ու սոցիալիզմի համար մղվող պայքարի գործին։ Սոցիալիստական երկրների ժողովուրդների, բոլոր մարքսիստական պարտիաների, բոլոր կոմունիստների սրբազան պարտականությունն է ամեն կերպ ամրապնդել մեր ժամանակների այդ հզոր, անհաղթահարելի ուժը՝ սոցիալիստական լագերի համախմբվածությունը։

«ԿՈՄՈՒՆԻՍՏ» ամսագիր, № 10, 1960 թ.

---

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

*Վ. ԳԱԲՈՒՋՅԱՆ*

*XX դարը մարդկության պատմության մեջ մտնում է որպես համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի հաղթանակի և կապիտալիզմի կործանման դարաշրջան, մի պրոցես, որն սկիզբ առավ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի օրից և կավարտվի այն ժամանակ, երբ կապիտալիզմը նախնադարյան, ստրկատիրական ու ֆեոդալական կարգերի կողքին իր տեղը կզբաղեցնի պատմության արխիվում։ Այդ ամբողջ տևողությունը երկու սիստեմների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի գոյակցության ժամանակաշրջանն է։*

*Հասարակական տնտեսական տարբեր սիստեմների գոյակցության ընդհանուր օրինաչափությունը պատմական տարբեր ժամանակաշրջաններում հանդես է գալիս էական առանձնահատկություններով։ Այդ առանձնահատկությունները պայմանավորված են նրանով, թե մարդկային հասարակությունը զարգացման ինչպիսի աստիճանի է հասել, այսինքն՝ նրանով, թե արտադրության ո՞ր եղանակների հերթափոխումն է կատարվում։*

*Կապիտալիզմի և սոցիալիզմի տնտեսական մրցությունը, ի տարբերություն հասարակարգերի գոյակցության բոլոր նախորդ աստիճանների, ծնունդ է առնում սոցիալիզմի կազմավորումից հետո միայն։ Խաղաղ մրցության մեջ մտնելով արտադրության կապիտալիստական սիստեմի հետ, սոցիալիզմն այժմ ընթանում է առավել զարգացած կապիտալիստական երկրներին տնտեսապես հասնելու և անցնելու ուղիով։ Դա նշանակում է, որ սոցիալիստական սիստեմը պետք է հասնի և անցնի կապիտալիստորեն ամենազարգացած երկրներին ոչ միայն արտադրության բացարձակ մեծության, այլև բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակի տեսակետից։ Սա է մրցության հիմնական չափանիշը, որի նվաճման համար առաջին անգամ սկսեց պայքար ծավալել սոցիալիզմի առաջին երկիրը՝ Սովետական Միությունը, որպես ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիր։*

*Բնակչության մեկ շնչին հասնող արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի չափը մի սինթետիկ ցուցանիշ է, որը կախված է արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի ավելացման, հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերից, բնակչության աճից և այլն։ ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի լուծումը մեր ժողովրդի կենսամակարդակը կհասցնի աշխարհում ամենաբարձր աստիճանին։*

*Սովետական ժողովուրդը այժմ պայքարում է տնտեսապես հասնելու և անցնելու համար ԱՄՆ-ին, որը կապիտալիստական աշխարհի ամենազարգա-*



*ցած երկիրն է։ Սակայն սա չի նշանակում, թե ԱՄՆ-ը կապիտալիստական աշխարհում զբաղեցնում են առաջին տեղը բնակչության մեկ շնչին հասնող արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի բոլոր տեսակների գծով։ Օրինակ, Նորվեգիայում և Կանադայում բնակչության մեկ շնչին արտադրվում է 20—25 տոկոսով ավելի շատ էլեկտրաէներգիա, քան ԱՄՆ-ում, Լյուքսեմբուրգը գերազանցում է ԱՄՆ-ին բնակչության մեկ շնչին հասնող պողպատի, Կուվեյտը՝ նավթի, Կուբան՝ շաքարի արտադրանքով և այլն։ Արդեն այժմ Սովետական Միությունը բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի տեսակետից գերազանցում է ԱՄՆ-ին մանգանի հանքաքարի, նիկելի, քրոմի, ասբեստի, կենդանական յուղի, ցորենի և այլ արդյունքների գծով, ըստ որում, այս շարքի մեջ մտնող արտադրանքի տեսակների թիվը գնալով մեծանում է։*

*Այսպիսով, չնայած ԱՄՆ-ը ոչ բոլոր արդյունքներով են կանգնած առաջին տեղում, այնուամենայնիվ կապիտալիզմի հետ մղվող տնտեսական մրցության մեջ մենք խնդիր ենք դնում հասնել և անցնել հենց ԱՄՆ-ին։ Դա բացատրվում է նրանով, որ այն առավելագույն աստիճանը, որին կարողացավ հասնել կապիտալիզմի էկոնոմիկան, ԱՄՆ-ի արտադրության մակարդակն է։ Բացի դրանից, ԱՄՆ-ը ունեն բազմաճյուղ զարգացած տնտեսություն, իսկ առանձին ցուցանիշների գծով ԱՄՆ-ին գերազանցող կապիտալիստական երկրները մյուս բոլոր արտադրանքների տեսակետից մեծ չափով ետ են մնում։ Եվ, վերջապես, ԱՄՆ-ը այժմ տալիս են կապիտալիստական աշխարհի արդյունաբերական ամբողջ արտադրանքի համարյա կեսը։ Խոսելով այս հարցի շուրջ, Ն. Ս. Խրուշչովը Ֆրանսիայի արհմիությունների ներկայացուցիչների հետ ս. թ. մարտի 31-ին կայացած հանդիպման ժամանակ հայտարարեց. «Ինչո՞ւ ենք ասում, որ կհասնենք Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Բոլոր ժողովուրդների աչքում դա արդյունաբերական տեսակետից ամենահարուստ և բարձր զարգացած երկիրն է, ուստի մեզ հետ վիճելիս, կոմունիստների հետ վիճելիս կապիտալիզմի կողմնակիցները միշտ օրինակ են բերում Ամերիկան, թե տեսեք, ահա Ամերիկայի Միացյալ Նահանգները կապիտալիստական երկիր են, բայց էկոնոմիկայի զարգացման ինչպիսի՜ բարձր մակարդակ ունեն, ավելի բարձր, քան սոցիալիստական երկրներինն է։*

*Այո՛, դա առայժմ այդպես է։ Բայց Սովետական Միությունը սոցիալիստական երկիր է, որը կառուցում է կոմունիզմ և նա իր առջև խնդիր է դրել՝ Միացյալ Նահանգների հետ խաղաղ մրցության մեջ անցնել ամենաբարձր զարգացած կապիտալիստական այդ երկրից և դրանով իսկ ցույց տալ սոցիալիստական հասարակարգի բոլոր առավելությունները։ Վստահ եղեք, որ մենք կանենք այդ և ոչ միայն կհասնենք, այլև կանցնենք Միացյալ Նահանգներից»։*

*Սկսած 1880 թվականից ԱՄՆ-ը զբաղեցնում են առաջին տեղը համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ։ Անցած 80 տարիների ընթացքում կապիտալիստական ոչ մի երկիր նույնիսկ չի համարձակվել ԱՄՆ-ի արդյունաբերական հզորությանը հասնելու հարց դնել։ Եվ ահա Սովետական Միությունը խնդիր դրեց հասնել և անցնել ԱՄՆ-ին։*

*Տարբեր երկրների տնտեսական հզորության ուժերի հարաբերակցության փոփոխությունը, նրանց միջև մղվող տնտեսական մրցության ելքը կախված են երկու գործոններից. առաջին՝ էկոնոմիկայի զարգացման առկա մակարդա-*

*կից, որ գոյություն ունի երկու երկրներում տնտեսական մրցության ժամանակաշրջանի սկզբում և, երկրորդ՝ նրանց էկոնոմիկայի հետագա զարգացման տեմպերի հարաբերակցությունից:*

*Հայտնի է, որ առաջին փորձնի տեսակետից մեր երկիրը չափազանց աննպաստ պայմաններում էր գտնվում: Բավական է հիշել, որ ցարական Ռուսաստանը արտադրության կատարելագործված սարքավորումներով զինված էր Անգլիայից 4 անգամ, Գերմանիայից 5 անգամ, ԱՄՆ-ից 10 անգամ վատ: Ռուսաստանը հետամնաց ագրարային երկիր էր: Հետևաբար, անհրաժեշտ էր առաջին հերթին հաղթահարել կապիտալիզմից ժառանգած հետամնացությունը:*

*Կապիտալիստականի նկատմամբ տնտեսության սոցիալիստական սիստեմի վճռական առավելությունների շնորհիվ սովետական իշխանության տարիներին մեր ժողովրդական տնտեսությունը զարգացավ պատմության մեջ չլսված տեմպերով: 1918—1958 թվականների ընթացքում ՍՍՌՄ արդյունաբերության ամբողջ արտադրանքի աճի միջին տարեկան տեմպը կազմեց 10,1 տոկոս, այն ժամանակ, երբ ԱՄՆ-ում կազմեց 3,2 տոկոս: Զարգացման տեմպերի նման հարաբերակցությունը, բնականաբար, փոփոխություններ առաջացրեց նաև արտադրության բացարձակ ծավալի ցուցանիշներում: Եթե 1913 թվականին ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալը գերազանցում էր Ռուսաստանինը 14,5 անգամ, ապա այդ տարբերությունն այժմ կազմում է 2 անգամից էլ քիչ: 1913 թվականին Ռուսաստանում բնակչության մեկ շնչին հասնում էր 21,4 անգամ պակաս արդյունաբերական արտադրանք, քան ԱՄՆ-ում: 1937 թվականին այդ տարբերությունը կրճատվեց մինչև 6,6, իսկ այժմ՝ 2,2 անգամ:*

*Անհրաժեշտ է հաշվի առնել, որ սովետական կարգերի գոյության պատմականորեն կարճ, 42 տարվա տևողության համարյա կեսը բաժին է ընկնում պատերազմների և նրանց հետևանքով քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնման տարիներին:*

*Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին ՍՍՌՄ-ի արդյունաբերական արտադրանքի ծավալը 5 անգամ փոքր էր, քան ԱՄՆ-ինը, իսկ 1943 թվականին այդ տարբերությունը մեծացավ, հասնելով 8 անգամի: Եվ դա հասկանալի է, որովհետև պատերազմը տարբեր ազդեցություն գործեց երկու երկրների տնտեսության վրա: Ամերիկյան արդյունաբերական արտադրանքի ընդլայնման և ընդարձակման համար մեծ հնարավորություններ ստեղծվեցին: ԱՄՆ-ը զավթեցին մի շարք շուկաներ արևմտյան և արևելյան կիսագնդերում: Գոյություն ունեցող արտադրական կարողությունների լրիվ ծանրաբեռնվածության և նորերի գործարկման հետևանքով ԱՄՆ-ի արդյունաբերությունը, որի 60 տոկոսը սպառազինություն էր մատակարարում, 5 տարվա մեջ աճեց 22 տոկոսով:*

*Այնինչ պատերազմը հսկայական վնասներ պատճառեց Սովետական Միությանը ինչպես մարդկային զոհերի, այնպես էլ ազգային ունեցվածքի գծով: Զավթիչների կողմից գրավված շրջանները մինչև պատերազմը տալիս էին մեր երկրի ամբողջ արդյունաբերական արտադրանքի 30 տոկոսը: Ոչնչացվեց այդ շրջաններում գտնվող ազգային ունեցվածքի ավելի քան 65 տոկոսը: Այն ժամանակ, երբ հոսում էր սովետական մարդկանց արյունը, ամերիկյան կապիտալիստները պարարտանում էին պատերազմի հաշվին: Այսպիսով, եր-*



*կու երկրների արդյունաբերության դրությունը բնութագրող ցուցանիշների տարբերությունները մեծացան:*

*Սակայն հետպատերազմյան շրջանում սովետական արդյունաբերության զարգացումն իր տեմպերով նորից առաջ անցավ, աստիճանաբար, հաստատուն քայլերով և վճռականորեն կրճատելով ԱՄՆ-ի արդյունաբերության զարգացման մակարդակից բաժանող տարբերությունը: Երկու երկրների արդյունաբերության զարգացումը մինչև ընթացիկ յոթնամյակի ելակետային տարին բնութագրվում է հետևյալ տվյալներով.*

Արդյունաբերական արտադրանքի դինամիկան *(տոկոսներով 1937=100)*

| | 1950 | 1954 | 1958 |
|---|---|---|---|
| ՍՍՌՄ | 251 | 413 | 620 |
| ԱՄՆ | 184 | 205 | 219 |

*Նույն ժամանակամիջոցում ՍՍՌՄ արդյունաբերության աճի տարեկան միջին տեմպը կազմեց 11,7 տոկոս, իսկ ԱՄՆ-ինը՝ 1,7 տոկոս: Զարգացման նման հարաբերակցության շնորհիվ, 1958 թվականին մեր արդյունաբերության արտադրանքի ծավալը կազմեց ամերիկյանի 57 տոկոսը այն ժամանակ, երբ դեռ 1953 թվականին կազմում էր ընդամենը մեկ երրորդը:*

*ՍՄԿԿ XXI համագումարը մշակեց կոմունիզմի ծավալուն կառուցման հոյակապ ծրագիր: Այժմ մեր երկրի աշխատավորները մեծ խանդավառությամբ կատարում և գերակատարում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների պլանի առաջադրանքները: Յոթնամյակի գործնական կարևորագույն խնդիրն է ապահովել սոցիալիստական արտադրողական ուժերի նոր հզոր վերելք, որը հնարավորություն տա առաջ շարժվել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ուղղությամբ: Յոթնամյակը միաժամանակ վճռական էտապ կլինի ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի լուծման գործում:*

*Կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական մրցման նոր շրջանը բնորոշվում է մեր երկրի ժողովրդական տնտեսության արագ զարգացմամբ: Այս տեսակետից յոթնամյակի արմատական խնդիրը մրցության մեջ առավելագույն չափով ժամանակ շահելն է: Մենք «...կհասնենք մյուս պետություններին այնպիսի արագությամբ, որի մասին նրանք մինչև անգամ չեն երազել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 464): Ներկայումս Սովետական Միությունը հասել է տնտեսական զարգացման այնպիսի մակարդակի, որը հնարավորություն է տալիս որոշել կապիտալիզմի դեմ վերջնական հաղթանակ տանելու կոնկրետ ժամկետները:*

*Յոթնամյակի վերջում Սովետական Միությունը բնակչության մեկ շնչին հասնող արդյունաբերական արտադրանքի չափով կանցնի Եվրոպայի ամենազարգացած կապիտալիստական երկրներից՝ Անգլիայից և Արևմտյան Գերմանիայից և այս ցուցանիշով կգրավի առաջին տեղը Եվրոպայում: 1965 թվականին արդյունաբերական արտադրանքի որոշ գլխավոր տեսակների բացարձակ թողարկման գծով ՍՍՌՄ-ը կանցնի, իսկ ուրիշ տեսակների գծով կմոտենա ԱՄՆ-ի այժմյան մակարդակին: Իսկ առհասարակ ամբողջ արդյունաբերական արտադրանքի ծավալի տեսակետից Սովետական Միությունը 1965*

թվականին կհասնի ԱՄՆ-ի այժմյան մակարդակին: Պետք է ենթադրել, որ այդ ժամանակամիջոցում ԱՄՆ-ը նույնպես միևնույն տեղում չեն մնա: 1959—1965 թվականների ընթացքում մեր արդյունաբերության համախառն արտադրանքի տարեկան միջին աճը կկազմի շուրջ 8,6 տոկոս: Այդ ժամանակաշրջանի համար ԱՄՆ-ի արդյունաբերության համախառն արտադրանքի տարեկան միջին աճը կարելի է ընդունել 2 տոկոս, նկատի ունենալով, որ վերջին մի քանի տարում ամերիկյան արդյունաբերությունը տարեկան աճել է շուրջ 2 տոկոսով: Այս պայմաններում, ընթացիկ յոթնամյակի և նրան հաջորդող հինգ տարիների ընթացքում արդյունաբերական արտադրության ծավալների հարաբերությունը կփոխվի հետևյալ կերպ.

ՍՍՌՄ և ԱՄՆ արդյունաբերական արտադրանքի աճի հարաբերակցության հեռանկարները. (ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի 1950 թվականի մակարդակը = 100)

| | 1958 | 1960 | 1962 | 1964 | 1965 | 1966 | 1968 | 1970 |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ՍՍՌՄ | 100 | 118 | 140 | 165 | 180 | 195 | 230 | 271 |
| ԱՄՆ | 180 | 187 | 195 | 203 | 207 | 211 | 219 | 228 |

Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ 2 տոկոս տարեկան միջին աճը ԱՄՆ-ի համար խիստ նպաստավոր է: 1946-ից մինչև 1959 թվականը ԱՄՆ-ի արդյունաբերությունը չորս անգամ անկում է ապրել. 1945-ից 1946 թվականը՝ 16 տոկոսով, 1948-ից 1949 թվականը՝ 8 տոկոսով, 1953-ից 1954 թվականը՝ 7 տոկոսով, 1957-ից 1958 թվականը՝ դարձյալ 7 տոկոսով: ԱՄՆ-ի պրեզիդենտի նախկին խորհրդատու, ամերիկյան խոշոր տնտեսագետ Լեոն Կեյզերլինգը, ամփոփելով ամերիկյան արդյունաբերության 1959 թվականի արդյունքները, «Նյու Յորք Թայմս» թերթում գրել է. «Մեր տարեկան միջին աճը 1953—1959 թվականներին կազմում է միայն 2,4 տոկոս...: Ոչ մի բացահայտ հատկանիշ չկա, որ առաջիկա 6 տարիներին միջին աճը կարող է ավելի բարձր լինել: Շատ բան հակառակն է պնդում»:

Մյուս կողմից, կյանքը ցույց է տալիս, որ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պլանները, յոթնամյակի առաջադրանքները սիստեմատիկաբար գերակատարվում են: Այնուամենայնիվ, նույնիսկ անտեսելով հիշյալ հանգամանքները, պարզվում է այսպիսի դրություն: 1965 թվականին Սովետական Միությունը հասնում է ԱՄՆ-ի արդյունաբերության 1958 թվականի մակարդակին, իսկ 1967—1968 թվականներին հասնում և անցնում է ԱՄՆ-ի արդյունաբերության նույն թվականների արտադրության ծավալից:

Ինչ վերաբերում է արդյունաբերական արտադրանքի բնակչության մեկ շնչին ընկնող չափի ցուցանիշին, ապա պետք է ասել, որ այս տեսակետից Սովետական Միությունը ԱՄՆ-ին կգերազանցի 1970 թվականին: Հաշվարկները ցույց են տալիս, որ սովետական արդյունաբերության արտադրության ծավալը բնակչության մեկ շնչի հաշվով, 1965 թվականին կկազմի ԱՄՆ-ի մակարդակի 72 տոկոսը, 1970 թվականին՝ 101, իսկ 1975 թվականին՝ 138 տոկոսը: 1970 թվականին ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը



20 տոկոսով կգերազանցի ԱՄՆ-ինը: Ընդունելով, որ ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի ազգաբնակչությունը կշարունակի աճել մոտավորապես նույն տեմպերով, այդ ժամանակաշրջանում մեր ազգաբնակչության բացարձակ աճը ավելի մեծ կլինի: ՍՍՌՄ բնակչության թիվը շուրջ 17 տոկոսով շատ կլինի, քան ԱՄՆ-ինը: Այսպիսով, ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը կլուծվի 1970 թվականին և նույնիսկ ավելի շուտ, ապահովելով բնակչության ամենաբարձր կենսամակարդակը ամբողջ աշխարհում: Դա կլինի սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակը կապիտալիզմի հետ մղվող խաղաղ մրցման բնագավառում: Այս է կապիտալիզմի հետ տնտեսական մրցման մեջ մեր վերջնական նպատակը, որն ամենայն անկեղծությամբ և պարզությամբ ձևակերպել է ընկեր Խրուշչովը. «Եթե դուք, պարոնայք կապիտալիստներ, համոզված եք, որ ձեր սիստեմը ուժեղ է, որ այն անխախտ է, ապա եկեք խաղաղ մրցման մեջ մտնենք: Գործով ցույց տվեք ձեր կապիտալիստական սիստեմի առավելությունները, իսկ մենք ցույց կտանք սոցիալիստական կարգերի առավելությունները: Կհաղթի այն հասարակարգը, որը կկարողանա մարդու կյանքի համար ավելի լավ պայմաններ ապահովել: Եթե դուք համոզված եք, որ այս «ճակատամարտում» կհաղթեք, ապա եկեք խաղաղ մրցման մեջ փորձենք մեր ուժերը» (Н. С. Хрущев. К победе в мирном соревновании с капитализмом. М. 1959, стр. 465):

Չնայած բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ցուցանիշը ժողովրդի կենսամակարդակը պայմանավորող կարևոր գործոն է, չնայած մենք պայքարում ենք այս ցուցանիշով հասնել և անցնել ԱՄՆ-ին, այնուամենայնիվ անհրաժեշտ է երկու վերապահում կատարել: Առաջին. բնակչության մեկ շնչին հասնող արտադրանքի չափի ցուցանիշը թվաբանական միջին մեծություն է, որը, ինչպես ամեն մի այլ միջին, քողարկում է երկու ծայրաթևերը: Այդ չափանիշի ստացման համար հարաբերության համարիչում վերցվում է արտադրանքի տարեկան ծավալը, իսկ հայտարարում՝ բնակչության թիվը: Բայց չէ՞ որ բուրժուական հասարակարգում կան պրոլետարներ և կապիտալիստներ, որտեղ արտադրվող բարիքների և հարստությունների առյուծի բաժինը շահագործողներին է պատկանում: Չէ՞ որ բուրժուազիան կազմում է կապիտալիստական երկրների բնակչության շուրջ 10 տոկոսը, այնինչ յուրացնում է տարվա ընթացքում արտադրվող ազգային եկամտի մոտավորապես 60 տոկոսը: Կապիտալիզմի պայմաններում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրության չափերի մեծությունը կամ մեծացումը դեռևս ինքնըստինքյան չի նշանակում աշխատավորների բարեկեցություն, կամ բարեկեցության բարձրացում: Իսկ սոցիալիզմի օրոք աներևակայելի է այնպիսի հակասություն, երբ արտադրությունն աճում է, իսկ աշխատավոր մասսաների կենսամակարդակը չի բարձրանում: Այսպիսով, թե՛ սոցիալիստական, թե՛ կապիտալիստական երկրներում արտադրության միևնույն մակարդակի գոյության պայմաններում սոցիալական հետևանքները տարբեր կլինեն: Դրանում էլ հենց դրսևորվում է սոցիալիզմի առավելությունը, որտեղ արտադրությունը ենթարկված է ոչ թե շահույթ կորզելու նպատակին, այլ հասարակության բոլոր անդամների պահանջմունքների առավելագույն բավարարմանը:

ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի լուծման շնորհիվ կապահովվի մեր հաղթանակը տնտեսական մրցման բնագավառում, սակայն կապիտալիստական էկոնոմիկայի զարգացման գագաթնակետը կոմունիստական հասա-

բակարգի համար շատ հեռու է տնտեսական զարգացման հնարավորությունների վերջին սահմանագիծը լինելուց։ Ինչպես նշված է ՍՄԿՊ XXI համագումարին Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցման մեջ, «...եթե ԱՄՆ-ի արտադրության մակարդակը վերցվում է որպես մեր էկոնոմիկայի աճի չափանիշ, ապա միայն ամենազարգացած կապիտալիստական էկոնոմիկայի հետ այն համեմատելու համար։ Շահելով ԱՄՆ-ի հետ տնտեսական մրցությունը, մենք կավարտենք կոմունիստական շինարարության միայն առաջին էտապը։ Այդ էտապում ձեռք բերված տնտեսական զարգացման մակարդակը մեզ համար ամենևին էլ վերջնական կայարան չէ, այլ սոսկ կիսակայարան, որտեղ մենք կկարողանանք առաջ անցնել ամենազարգացած կապիտալիստական երկրից, նրան թողնել այդ կիսակայարանում, իսկ ինքներս առաջ շարժվել»։

Երկու սիստեմների տնտեսական մրցման ելքը, ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի հաջող լուծումը երաշխավորված է Սովետական Միության էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերով։ Տնտեսական զարգացման տեմպը մի բարոմետր է, որը ցույց է տալիս տնտեսական հզորության աճի աստիճանը։

Բուրժուական շատ տնտեսագետներ պնդում են, թե իբր ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքի աճի տեմպերը բարձր են, որովհետև սովետական արդյունաբերական արտադրանքի ծավալը համեմատաբար փոքր է։ Այս հերյուրանքը ոչ մի քննադատության չի դիմանում։ Տնտեսական զարգացման թափը ամբողջովին կախված է նրանից, թե ինչպիսի հարաբերության մեջ է գտնվում արտադրողական ուժերի բնույթը տիրապետող արտադրական հարաբերությունների հետ։ Մեր զարգացման բարձր տեմպերը պայմանավորված են տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելություններով։ Այլապես անհասկանալի է, թե ինչու մեր տեմպերը մի քանի անգամ գերազանցում են Անգլիայի ու Ֆրանսիայի տնտեսական զարգացման տեմպերից, չնայած ներկայումս ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելի մեծ է, քան այդ երկրներինը։

Բոլորովին այլ հարց է, թե ինչպե՞ս է հարաբերում արտադրության ծավալի բացարձակ աճը նրան համապատասխանող զարգացման տեմպերի հետ։ Բավական երկար ժամանակ ԱՄՆ-ը գերազանցում էին Սովետական Միությանը արդյունաբերական արտադրանքի տարեկան բացարձակ աճի տեսակետից, թեպետ նույն տարիներին մեր տեմպերը մի քանի անգամ ավելի բարձր էին։ Այդ իսկ պատճառով, ԱՄՆ-ի և ՍՍՌՄ-ի միջև արտադրության ծավալների տարբերությունը ոչ թե կրճատվում, այլ մեծանում էր հօգուտ մեր մրցակցի։ Ամերիկյան արդյունաբերական արտադրանքի 2—3 տոկոսի աճը այն ժամանակ համապատասխանում էր բացարձակ արտահայտությամբ ավելի շատ արտադրանքի, քան մեր արդյունաբերության 10—15 տոկոսի աճը, որովհետև տեմպերի գերազանցության, բայց արտադրության չափերի մեծ տարբերության պայմաններում աճի ամեն մի տոկոսը ներկայացնում է տարբեր չափի բացարձակ մեծություն։ Հետագայում աստիճանաբար հասունացան երկու երկրների՝ արտադրանքի բացարձակ աճի տարբերության կրճատման հնարավորությունները, որոնք պայմանավորված են կուտակման մասշտաբներով։ Այս հիման վրա, հարաբերական տարբերության շարունակվող փոքրացման պայմաններում անցում է կատարվում նաև դեպի բացարձակ տարբերությունների կրճատում։



1951—1952 թվականներից մեր արդյունաբերությունը սկսեց առանձնապես արագորեն անցնել ԱՄՆ-ի արդյունաբերության աճի բացարձակ չափերը։ 1953—1959 թվականներին ամբողջ արդյունաբերական արտադրանքի տարեկան բացարձակ աճը մեր երկրում մոտավորապես 2,5 անգամ ավելի շատ էր, քան ԱՄՆ-ում։ Այդ տարիներին տնտեսական մրցությունը ընդունեց նոր որակ հենց նրանով, որ մեր երկիրը գերազանցեց ԱՄՆ-ին ոչ միայն տեմպերի, այլև արտադրանքի տարեկան բացարձակ աճի տեսակետից։

Իրականում Սովետական Միությունը գերազանցում է ԱՄՆ-ին ոչ միայն աճի տեմպերով, այլև արդյունաբերական արդյունքի կարևորագույն տեսակների՝ չուգունի, պողպատի, երկաթահանքի, նավթի, ածխի, ցեմենտի, բամբակյա ու բրդյա գործվածքեղենի և կոշիկի արտադրման տարեկան բացարձակ աճով։ Տարեցտարի ավելանում է այն ապրանքների թիվը, որոնց արտադրման տեսակետից Սովետական Միությունը անցնում է ԱՄՆ-ից ոչ միայն հարաբերական տեմպերի, այլև բացարձակ ծավալի տեսակետից։ Մեր այդ գերազանցությունը յոթնամյակի ընթացքում գնալով ավելի նշանակալից կդառնա, որովհետև ՍՍՌՄ արդյունաբերության աճի յուրաքանչյուր տոկոս աստիճանաբար արտադրության ավելի մեծ ֆիզիկական ծավալ կներկայացնի։ Մինչդեռ սովետական արդյունաբերական արտադրանքի աճի մեկ տոկոսը 1928 թվականին չէր հասնում 0,5 միլիարդ ռուբլու, 1952 թվականին կազմեց 5 միլիարդ, 1958 թվականին՝ 10, ապա 1965 թվականին կկազմի 19 միլիարդ ռուբլի, այսինքն՝ համարյա 2 անգամ շատ, քան 1958 թվականին։

1965 թվականին մեր երկրում չուգունի ձուլումը կկազմի 65—70 միլիոն տոննա, պողպատինը՝ 86—91 միլիոն։ Դա նշանակում է, որ յոթնամյակի ընթացքում չուգունի արտադրության բացարձակ աճը կկազմի 25—30, իսկ պողպատինը՝ 31—36 միլիոն տոննա։ Մեր երկրում չուգունի արտադրման 30 միլիոն տոննայի աճ մենք ձեռք ենք բերել 18 տարում (1934—1940, 1948—1958 թթ.)։ Այժմ նույն արդյունքները մենք ձեռք ենք բերելու 7 տարում։ Բնորոշ է, որ ԱՄՆ-ում համապատասխանաբար պահանջվել է չուգունի համար 25 տարի, իսկ պողպատի նույնքան աճի համար՝ 21 տարի։ Յոթնամյակի ընթացքում էլեկտրաէներգիայի արտադրության բացարձակ աճը կկազմի 267—287 միլիարդ կիլովատ ժամ, որն ավելի շատ է, քան Եվրոպայի ամենազարգացած կապիտալիստական երկրների՝ Անգլիայի, Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի էլեկտրաէներգիայի միասին վերցրած ամբողջ արտադրության ժամանակակից մակարդակը, որին նրանք կարողացել են հասնել իրենց էներգետիկայի զարգացման ամբողջ պատմության ընթացքում։ 1965 թվականին Սովետական Միությունում կարտադրվի 660 հազար տոննա արհեստական թել. 1958 թվականին արտադրվել է 168 հազար տոննա. բացարձակ աճը կազմում է 500 հազար տոննա։ Համարյա նույն չափով աճ է տվել ԱՄՆ-ի արհեստական թելի արդյունաբերությունը 17 տարվա ընթացքում (1940 թ.՝ 215, իսկ 1957 թ.՝ 750 հազար տոննա)։ Այսպիսով, այն, ինչին ԱՄՆ-ը կարողացել են հասնել 17 տարվա ընթացքում, մենք կնվաճենք 7 տարում՝ շահելով 10 տարի։

Վերոհիշյալ մի քանի տվյալները միայն մի մասնիկն են այն վիթխարի նվաճումների, որոնք ձեռք է բերելու սովետական ժողովուրդը ընթացիկ յոթնամյակում։ Հասկանալի է, որ պատմության մեջ չլսված ժամկետում արդյունաբերական արտադրության աներևակայելի աճը պահանջում է համապա-

տասխան կապիտալ ներդրումներ՝ հանքերի, էլեկտրակայանների, գործարանների, երկաթուղագծերի կառուցման համար։ Սակայն նոր օբյեկտների շինարարությունը, ինչպես նաև արդեն գոյություն ունեցողների ընդարձակումը արտադրության ավելացման հասնելու միայն մեկ, այն էլ ենթակա նշանակություն ունեցող կողմն է։ Բավական է նշել, որ 1965 թվականին արդյունաբերական արտադրանքի աճման երեք քառորդը կստացվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Դա նշանակում է, որ յոթնամյակի ծրագրերը կիրականացվեն հիմնականում սոցիալիստական ընդլայնված վերարտադրության ու կուտակման գլխավոր աղբյուրի՝ հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Այսպիսով, աշխատանքի արտադրողականության բարձրացումը արդյունքների արտադրության ավելացման գլխավոր աղբյուրն է։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում հասարակական աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձրացումը հանդիսանում է սոցիալիստական ընդլայնված վերարտադրության բարձր տեմպերի ապահովման պայմանը։ Նյութական բարիքների արտադրության մասշտաբները արագ տեմպերով մեծացնելու համար անհրաժեշտ է կրճատել արդյունքի արտադրման վրա ծախսվող աշխատաժամանակը։ Մեծ Լենինը սովորեցնում է, որ նոր հասարակարգի հաղթանակի ամենակարևոր, ամենագլխավոր պայմանը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ «Կոմունիզմը,—գրել է նա,—կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է, կապիտալիստականի համեմատությամբ» (Երկեր, հ. 29, էջ 524)։

Սոցիալիստական հասարակարգին հատուկ տեխնիկական առաջընթացի անսահմանափակ հնարավորությունների շնորհիվ, Սովետական Միությունում հասարակական աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է անշեղորեն։ Եթե կապիտալիզմի ժամանակ աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում զգալի դեր է կատարում բանվորների աշխատանքի ինտենսիվության ուժեղացումը, ապա սոցիալիստական հասարակարգում աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է հիմնականում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրման, ինչպես նաև աշխատանքի և արտադրության կազմակերպման բարելավման շնորհիվ։

Իսկ ինչպիսի՞ հարաբերության մեջ են գտնվում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի և աշխատանքի արտադրողականության ցուցանիշները։ Եթե առաջինը մեկ տարվա ընթացքում արտադրված արդյունքի և բնակչության ընդհանուր թվի հարաբերությունն է, ապա երկրորդը մեկ տարվա ընթացքում արտադրված արդյունքի և տվյալ ճյուղում աշխատող բանվորների թվի քանորդն է։ Հետևաբար, բնակչության մեկ շնչին հասնող արդյունքի քանակը ուղիղ համեմատական է աշխատանքի արտադրողականության աստիճանին։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ այս երկու ցուցանիշների ուղիղ համեմատության մեջ գտնվելը ամենևին չի նշանակում, որ նրանք աճում են հավասար տեմպերով։ ՍՍՌՄ-ում բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքը աճում է ավելի արագ, քան արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը։ Դա բացատրվում է նրանով, որ մեր արդյունաբերական բանվորների թվի տարեկան միջին աճը ավելի քան երկու անգամ գերազանցում է մեր ամբողջ բնակչության տարեկան միջին աճից։



Այնինչ ԱՄՆ-ի արդյունաբերական բանվորների քանակական աճի ցուցանիշը զգալիորեն զիջում է Սովետական Միությանը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը կապիտալիզմի հետ մղվող մրցության մեջ սոցիալիզմի հաղթանակների կարևոր բնագավառներից մեկն է։ Հենվելով տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների վրա, Սովետական Միությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերով առաջ անցավ բոլոր կապիտալիստական երկրներից, այդ թվում և ԱՄՆ-ից։ Բուրժուական տնտեսագետներ Հեյլենսոնի և Հիրշի տվյալներով, աշխատանքի արտադրողականությունը ԱՄՆ-ի արդյունաբերության մեջ աճում է տարեկան 1—2 տոկոսով։ Սովետական արդյունաբերության մեջ այդ աճը կազմում է 6—8 տոկոս։ Եթե ցարական Ռուսաստանում արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը 5 անգամ ցածր էր, քան Անգլիայում, 3 անգամ ցածր, քան Ֆրանսիայում և 9 անգամ ցածր, քան ԱՄՆ-ում, ապա զարգացման բարձր տեմպերի շնորհիվ մեր երկիրը արդեն այժմ այս տեսակետից ևս ավելի բարձր մակարդակի վրա է կանգնած, քան Անգլիան ու Ֆրանսիան և զգալիորեն կրճատել է ԱՄՆ-ից բաժանող տարբերությունը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը ոչ միայն սոցիալիստական կուտակման, արտադրության ավելացման գլխավոր աղբյուրն է, այլև ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հիմքը։ Աշխատանքի արտադրողականության աճի շնորհիվ նվազում է արդյունքի ինքնարժեքը, որը հնարավորություն է տալիս բարձրացնել մեր բանվորների ռեալ աշխատավարձի մակարդակը։ Մյուս կողմից՝ աշխատանքի արտադրողականության բարձրացումը հնարավորություն կտա կրճատել աշխատանքային օրը։ Արդեն այս տարի մեզ մոտ կավարտվի բանվորների անցումը յոթժամյա աշխատանքային օրվա, իսկ ածխահատների, մետալուրգների և արտադրական ծանր պայմաններ ունեցող մի շարք այլ մասնագիտությունների համար՝ վեցժամյա աշխատանքային օրվա։ 1964 թվականին կսկսենք անցնել վեցժամյա աշխատանքային օրվա, իսկ ծանր պայմաններ ունեցող մասնագիտությունների բանվորները կանցնեն հինգժամյա աշխատանքային օրվա։ Դա կլինի աշխարհում ամենակարճ աշխատանքային օրը, միաժամանակ՝ լրիվ պահպանելով և նույնիսկ բարձրացնելով աշխատավարձը։

Յոթնամյակի ընթացքում մեր արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 45—50 տոկոսով, իսկ եթե հաշվի առնենք աշխատօրվա կրճատումը, ապա այդ աճը շատ ավելի մեծ կլինի։ Երկաթուղային տրանսպորտում աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 34—37 տոկոսով և կգերազանցի ԱՄՆ-ի ներկա մակարդակը։ Աշխատանքի արտադրողականությունը կոլտնտեսություններում կաճի 2 անգամ, իսկ սովխոզներում՝ 60—65 տոկոսով։

Հիմնական տնտեսական խնդրի լուծման համար Սովետական Միությունը պետք է գերազանցի ԱՄՆ-ին ո՛չ միայն արդյունաբերական, այլև գյուղատնտեսական արտադրության՝ բնակչության մեկ շնչին հասնող չափի տեսակետից։ 1937 թվականին մեզ մոտ բնակչության մեկ շնչին հասնում էր 4 անգամ ավելի քիչ կենդանական յուղ, 2,3 անգամ ավելի քիչ կաթ, քան ԱՄՆ-ում։

Յոթնամյակի ելակետային տարում՝ 1958 թվականին, մեր գյուղատնտեսական արդյունքի ամբողջ արտադրության ծավալը ընդամենը 20—25 տոկո-

տով էր պակաս, քան ԱՄՆ-ինը, իսկ բնակչության յուրաքանչյուր շնչին հասնող ամբողջ գյուղատնտեսական արդյունքի չափի տարբերությունը կազմում էր 40 տոկոս։ Մեր գյուղատնտեսության աշխատավորները սոցիալիստական լայն մրցություն ծավալեցին կարճ ժամանակում բնակչության մեկ շնչին հասնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու և անցնելու պարտիայի կողմից առաջադրված խնդիրը պատվով կատարելու համար։ 1958 թվականին ՍՍՌՄ-ը հասավ կաթի արտադրության ԱՄՆ-ի մակարդակին և արդեն 1959 թվականին Սովետական Միությունում արտադրվեց 62 միլիոն տոննա կաթ, իսկ ԱՄՆ-ում՝ մոտ 57 միլիոն տոննա։ Նույն թվականին մեզ մոտ արտադրվեց 845 հազար տոննա կենդանական յուղ, կամ բնակչության յուրաքանչյուր շնչին միջին հաշվով՝ 4 կիլոգրամ, իսկ ԱՄՆ-ում արտադրվեց 658 հազար տոննա, կամ բնակչության յուրաքանչյուր շնչին՝ 3,7 կիլոգրամ։

Բնակչության մեկ շնչին հասնող գյուղատնտեսական արտադրանքի տեսակետից ՍՍՌՄ-ը գերազանցում է ԱՄՆ-ին ո՛չ միայն յուղի, այլև ցորենի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, բրդի, վուշի, տարեկանի, գարու արտադրության, ոչխարի ու խոզի գլխաքանակի գծով և այլն։ 1958 թվականին մեզ մոտ արտադրվել է ավելի քան երկու անգամ շատ բուրդ, հավաքվել է երկու անգամ շատ ցորեն, քան ԱՄՆ-ում։ Ըստ որում ԱՄՆ-ի համար 1958 թվականը այս տեսակետից արտասովոր տարի էր։ Բավական է նշել, որ այդ թվականին ԱՄՆ-ում հավաքվել է 179,8 միլիոն տոննա հացահատիկ, այնինչ ընդամենը մեկ տարի առաջ՝ 1957 թվականին հավաքվել էր 158,2 միլիոն տոննա։ Եթե հաշվի առնենք այս հանգամանքը և համեմատությունն անցկացնենք 1953—1958 թվականների միջին տարեկան ցուցանիշներով, ապա ցորենի արտադրությամբ Սովետական Միությունը կգերազանցի ԱՄՆ-ին մոտ 3 անգամ։

Յոթնամյա պլանով նախատեսված է գյուղատնտեսական արդյունքի բոլոր տեսակների արտադրման զգալի աճ։ 1965 թվականին մեզ մոտ կարտադրվի 100—105 միլիոն տոննա կաթ, մեկ միլիոն հարյուր հիսուն հազար տոննա կենդանական յուղ։ Հողագործության բնագավառում մոտակա տարիներին ևս գլխավոր գիծը կմնա ամբողջ գյուղատնտեսության արտադրության հիմքի՝ հացահատիկի արտադրության անընդհատ մեծացումը։ Կշարունակի զգալիորեն ավելանալ նաև տեխնիկական հիմնական կուլտուրաների արտադրությունը։

1965 թվականին մեր գյուղատնտեսության ամբողջ համախառն արտադրանքը 1,7 անգամ կգերազանցի 1958 թվականի մակարդակը, իսկ արտադրության տարեկան միջին աճը կկազմի 8 տոկոս, որի շնորհիվ գյուղատնտեսական արտադրանքի մնացած կարևորագույն տեսակների գծով ինչպես բացարձակ մեծությամբ, այնպես էլ բնակչության մեկ շնչին հասնող արտադրանքի տեսակետից Սովետական Միությունը կանցնի ԱՄՆ-ի ներկա մակարդակը։ Յոթնամյակի առաջադրանքների իրականացումը պահանջում է առավելագույն էֆեկտիվությամբ օգտագործել գյուղատնտեսության բոլոր, իսկ առաջին հերթին՝ աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման ռեզերվները։

Սոցիալիզմի վերածումը համաշխարհային սիստեմի նշանավորեց նոր էտապ երկու սիստեմների խաղաղ մրցման մեջ։ Տնտեսության համաշխարհային սիստեմի կազմավորումով կապիտալիզմի և սոցիալիզմի միջև մղվող



տնտեսական մրցությունը ընդունեց տնտեսության երկու համաշխարհային սիստեմների մրցության բնույթ։

Արդեն 1958 թվականին բնակչության մեկ շնչին հասնող արդյունաբերական արտադրանքի տեսակետից տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմն առաջ անցավ տնտեսության համաշխարհային կապիտալիստական սիստեմից։ Վերջին 5 տարիների ընթացքում ամբողջ սոցիալիստական լագերի արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը կազմեց 11 տոկոս, այնինչ, նույն ժամանակամիջոցում ամբողջ կապիտալիստական աշխարհինը կազմեց 3 տոկոսից էլ պակաս։

Այժմ կապիտալիզմի հետ ծավալված մրցության մեջ առավելագույն չափով ժամանակ շահելու խնդիրը կանգնած է ո՛չ միայն Սովետական Միության, այլև բոլոր սոցիալիստական երկրների առաջ, որոնք ձեռք ձեռքի տված, եղբայրական օգնություն ցույց տալով միմյանց, ընթանում են դեպի մեծ նպատակը՝ կոմունիզմ։ Եթե այժմ սոցիալիստական լագերի բաժինը համաշխարհային ամբողջ արդյունաբերական արտադրանքի մեկ երրորդըն է կազմում, ապա սովետական յոթնամյակի և սոցիալիստական մյուս երկըրների ժողովրդական տնտեսության զարգացման պլանների կատարման շնորհիվ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը 1965 թվականին կտա արդյունաբերական համաշխարհային ամբողջ արտադրանքի կեսից ավելին։ Դա կնշանավորի տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմի հաղթանակը կապիտալիզմի հետ մղվող տնտեսական մրցման բնագավառում։

Սոցիալիստական երկրների զարգացման ժամանակակից, նոր էտապի պատմական նշանակությունը նաև այն է, որ ռեալ հնարավորություններ կըստեղծվեն բացառելու պատերազմները միջազգային հարաբերությունների ասպարեզից։ Սոցիալիստական լագերի տնտեսական գերազանցությունը կապիտալիստականի նկատմամբ, սոցիալիստական լագերի երկրների ամուր միասնությունը, ժողովուրդների խոր և գնալով ամրապնդվող հավատը կոմունիստական պարտիաների քաղաքականության նկատմամբ, այնպիսի գործոններ են, որոնք ձախողման կդատապարտեն ագրեսորների ամեն մի ավանտյուրա։

# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ, ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԵՎ ՀԱՆՐԱՅԻՆ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Ս. ԻՇԽԱՆՅԱՆ

*Սովետական երկիրը թևակոխել է իր զարգացման նոր՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը: Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական ինտելիգենցիայի հերոսական ջանքերով հաջողությամբ է իրագործվում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման այն վեհ ծրագիրը, որ մշակել է Կոմունիստական պարտիայի պատմական XXI համագումարը: Այդ են ապացուցում ժողովրդա-տնտեսական պլանների հաջող կատարման արդյունքները, մեր մարդկանց օրըստօրե աճող քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, Սովետական պետության միջազգային հեղինակության, պետությունների հարաբերություններում նրա ազդեցության աննախընթաց աճը:*

*Հենվելով սոցիալիստական պետության, կոմունիզմի կառուցման գործում նրա դերի վերաբերյալ մարքսիստական-լենինյան ուսմունքի վրա, առաջ մղելով և հարստացնելով այն, ՍՄԿՊ XXI համագումարը նշեց, որ Սովետական Միության զարգացման ներկա փուլում սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը դեմոկրատիայի համակողմանի ծավալումն է, բնակչության ամենալայն խավերի ներգրավումը երկրի կառավարման, տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման բոլոր գործերում:*

***

*Պրոլետարիատի դիկտատուրայի, նրա քաղաքական արտահայտության՝ սոցիալիստական պետության հարցը գլխավորն է մարքսիստական-լենինյան ուսմունքի մեջ: Սոցիալիստական պետությունն այն գլխավոր գործիքն է, որը սովետական ժողովուրդն օգտագործում է հասարակության վերափոխման, կոմունիզմի կառուցման համար: Սովետական պետությունն իր էությամբ ու կառուցվածքով բոլորովին նոր տիպի պետություն է, որի նմանը չի իմացել պատմությունը: Այն լիակատար կերպով արտահայտում է աշխատավորների շահերը, հենվում ժողովրդական մասսաների ակտիվ պաշտպանության վրա: Սովետական իշխանությունն աշխարհում առաջին, իսկական ժողովրդական իշխանությունն է, որը ոչնչացրել է սոցիալական և ազգային ճնշումը, հավիտյանս ոչնչացրել է շահագործող-պարազիտային դասակարգերը և մարդու կողմից մարդու շահագործումը: Ահա թե որն է նրա ուժի և անպարտելիության աղբյուրը:*



*Սոցիալիստական պետության գրանիտե հիմքն են կազմում բանվոր դասակարգի և գյուղացիության ամուր դաշինքն ու ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի բարեկամությունը: Կոմունիստական պարտիան իր ամբողջ քաղաքականությունը կառուցում է բանվոր դասակարգի ու կոլտնտեսային գյուղացիության անխորտակելի դաշինքի վրա, որի շնորհիվ Սովետական պետությունը մեր երկրում իրագործել է վիթխարի մասշտաբների համաշխարհային-պատմական վերափոխումներ:*

*Սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում Կոմունիստական պարտիան անդուլ վարել է Սովետական պետությունը և կատարելագործել նրա կառավարման ապարատը, հոգ է տարել երկրի պաշտպանունակության ամրապնդման մասին: Մեր օրերում էլ պարտիան մեծ կարևորություն է տալիս պետական իշխանության հետագա ամրապնդմանը, նրա տնտեսական-կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական գործունեության ուժեղացմանը: Դա հենց այն անհրաժեշտ պայմաններից մեկն է, որ պետք է ապահովի զարգացման յոթնամյա վիթխարի ծրագրի հաջող կատարումը, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը:*

*Սոցիալիստական պետությունը կոչված է ապահովելու երկրի արտադրողական ուժերի հզոր զարգացումն ու սոցիալիստական արտադրական հարաբերությունների կատարելագործումը, վերահսկողություն իրագործելու աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ, ապահովելու գիտության, կուլտուրայի, արվեստի զարգացումն ու ժողովրդի բարեկեցության աճը: Ուրեմն գնալով ավելի են ընդլայնվելու մեր պետության ներքին՝ տնտեսական-կազմակերպման և կուլտուր-դաստիարակչական ֆունկցիաները: Ճնական է, որ քանի դեռ աշխարհում կան ագրեսիվ ուժեր, քանի դեռ չի վերացել իմպերիալիստական տերությունների կողմից մեր երկրի վրա հարձակման վտանգը, հետագա զարգացում են ստանալու նաև սոցիալիստական պետության արտաքին այն ֆունկցիաները, որոնք բխում են տարբեր սոցիալ-քաղաքական սիստեմներ ունեցող պետությունների հետ խաղաղ գոյակցության համար մղվող պայքարից:*

*Սովետական հասարակության զարգացմանը համընթաց փոխվում են պետական օրգանների գործունեության մեթոդները, գնալով ավելի մեծ նշանակություն են ստանում մասսաների կազմակերպման ու համոզման մեթոդները: Արդեն այժմ մենք ականատես ենք կոմունիստական հասարակական ինքնավարության ծիլերին:*

*Ընդհանրացնելով մեր երկրում կոմունիստական շինարարության փորձը, պարտիայի XXI համագումարը զարգացրեց այն կարևորագույն դրույթը, որ շատ ֆունկցիաներ, որ այժմ կատարում են պետական օրգանները, պետք է աստիճանաբար անցնեն հասարակական կազմակերպություններին: Այստեղից էլ հետևում է, որ անշեղորեն աճելու է պարտիական կազմակերպությունների, մասսայական, հասարակական կազմակերպությունների, արհմիությունների, կոմերիտմիության դերը աշխատավոր մասսաների ինքնագործունեության և ակտիվության զարգացման գործում:*

*Սովետական հասարակության՝ սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում հսկայական է աշխատավորների դեպուտատների Սովետների դերը և գնալով ավելի ու ավելի է լայնանալու նրանց աշխատանքի ծավալը: Այդպիսին է սոցիալիստական պետականության զարգացման դիալեկտիկան: Հասա-*

րակական կազմակերպությունների աճող դերը ամենևին էլ չի կարող նվազեցնել Սովետների նշանակությունը երկրի տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում։ Ընդհակառակը, այդ պրոցեսն ավելի է ընդլայնում ու ամրապնդում սոցիալիստական հասարակարգի քաղաքական հիմքը և կապահովի սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը. ահա թե ինչպես։

Աշխատավորների դեպուտատների Սովետները մեր պետության քաղաքական հիմքն են, աշխատավորների համապարփակ կազմակերպությունները։ Սովետներն ապահովում են ամբողջ ժողովրդի փաստական մասնակցությունը երկրի կառավարման գործին, աշխատավորներին ընձեռում այնպիսի դեմոկրատական փաստական իրավունքներ և ազատություններ, որպիսիք չեն կարող լինել ամենադեմոկրատական բուրժուական պետություններում։ Կոմունիստական շինարարության ընթացքում ավելի կաճեն Սովետների ֆունկցիաներն ու ակտիվությունը։

Որպեսզի ավելի սերտ լինի Սովետների կապը բնակչության հետ, նրանց կից ստեղծվում են բազմաթիվ հանձնաժողովներ, որով դեպուտատները ավելի մեծ հնարավորություն են ստանում ակտիվորեն մասնակցելու ընտրողների բարձրացրած հարցերի քննարկմանն ու լուծմանը։ Ահա թե ինչու պարտիայի XXI համագումարը խնդիր դրեց՝ ավելի բարձրացնել Սովետների դերը։ Սովետները պետք է ամեն օր զբաղվեն արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության հարցերով, հոգ տանելով բնակչության բարեկեցության բարձրացման մասին, այնպես անեն, որ բոլոր ձեռնարկությունները, կոլտնտեսությունները, սովխոզները կատարեն և գերակատարեն յոթնամյակի առաջադրանքները։

Սովետական ժողովրդի համաշխարհային-պատմական հաղթանակների գործում իրենց արժանի ավանդն են մուծել արհմիությունները, որոնք միավորում են 52 միլիոն բանվորներ և ծառայողներ։ Վերջին տարիներս, հատկապես պարտիայի XX համագումարից հետո, զգալի աշխուժություն է նկատվում արհմիությունների կյանքում։ Ակնհայտ է արհմիությունների դերի բարձրացումը։ Նրանց գործունեության համար այժմ բարենպաստ պայմաններ են ստեղծված։ Նրանք շատ կարևոր դեր են խաղում սովետական հասարակության կյանքում։ Արհմիությունները ակտիվորեն մասնակցում են տնտեսական պլանների մշակմանը, պետական օրգանների գործունեությանը։

ՍՄԿՊ XXI համագումարը բարձր գնահատեց արհմիությունների դերն ու գործունեությունը, նշելով, որ յոթնամյա պլանը հաջողությամբ կատարելու համար արհմիությունները մեծ անելիքներ ունեն աշխատավորներին մոբիլիզացնելու գործում։ Լայնորեն օգտագործելով արտադրության կառավարման գործում աշխատավորներին ներգրավելու բազմազան ձևերը, արհմիությունների առաջ խնդիր է դրված՝ զարգացնել նրանց ակտիվությունը և այն ծառայեցնել պետական առաջադրանքների կատարման և գերակատարման համար մղվող պայքարին, ամենօրյա հոգատարություն հանդես բերել բանվորների ու ծառայողների կենցաղի բարելավման, նրանց կոմունիստական գիտակցականության բարձրացման նկատմամբ։

Մեծ է լենինյան կոմերիտմիության դերը պատանիների ու աղջիկների կոմունիստական դաստիարակության, երկրի հասարակական-քաղաքական կյանքի բոլոր ոլորտներում նրանց ակտիվորեն ներգրավելու գործում։ Մենք



ականատես ենք այն ուրախալի փաստին, որ վերջին տարիներս կոմերիտմիությունը շեշտակի շրջադարձ է կատարել դեպի կոմունիստական շինարարության պրակտիկ գործը, զգալիորեն բարձրացրել է երիտասարդության շրջանում կատարվող գաղափարական-քաղաքական աշխատանքի մակարդակը։ Բավական է վերհիշել խամ ու խոպան հողերի յուրացման էպոպեան, կոմունիստաբար աշխատելու հիանալի շարժումը, որի նախաձեռնողները եղան կոմունիզմի երիտասարդ կառուցողները։ Այժմ կոմերիտմիությունը վերցրել է հարյուր վիթխարի արդյունաբերական նորակառույցների շեֆությունը. նրանց ժողովուրդն անվանել է հարվածային կոմերիտականներ։ Որպեսզի ակնառու լինի երիտասարդ հայրենասերների աշխատանքային սխրանքը, բավական է ասել, որ կոմերիտական հարվածային օբյեկտները կազմում են յոթնամյակում գործարկվելիք պողպատի արտադրության ձեռնարկությունների կեսից ավելին։

Կոմերիտմիության, ամբողջ սովետական երիտասարդության փառապանծ գործերը, նրանց աշխատանքային սխրանքները մի անգամ ևս վկայում են, որ մեր հիանալի սովետական պատանիների ու աղջիկների բոցավառ սրտերը բաբախում են Հայրենիքի մեծ գործերի համար։

Սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար մղված պայքարի ամբողջ փորձը ցույց է տալիս, որ կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում պարտիայի՝ որպես ժողովրդի փորձված ավանգարդի և հասարակական կազմակերպության բարձրագույն ձևի, դերն ավելի ու ավելի է աճում։ Կոմունիստական պարտիան աշխատավորների ինչպես պետական, նույնպես և հասարակական բոլոր կազմակերպությունների ղեկավար ուժն է։ Պարտիան ժողովրդի ավանգարդն է, և, շատ բնական է, որ աշխատավորների ակտիվության, գիտակցականության աճի հետ միասին աճում է նաև պարտիայի դերը։ Ահա թե ինչու կոմունիստական պարտիան իր բոլոր կազմակերպություններին, պարտիական աշխատողներին նպատակամղում է այն բանին, որպեսզի նրանք ավելի հմտորեն գլխավորեն մասսաների ակտիվությունը, ամեն կերպ պաշտպանեն սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը, պաշտպանեն նորն ու առաջավորը, որ ամեն օր, ամեն ժամ ծնվում է կոմունիզմի կառուցման հնոցում։ Պարտիական կազմակերպությունների ամենօրյա կյանքում ծագում և զարգանում են աշխատանքի նոր մեթոդներ ու ձևեր՝ մեր երկրի զարգացման նոր ժամանակաշրջանին համապատասխան։

Կոմունիստական պարտիան միջոցառումների մի ամբողջ սիստեմ է իրագործում, որի նպատակն է բազմակողմանիորեն ծավալել սոցիալիստական դեմոկրատիան, ավելի ակտիվորեն ներգրավել աշխատավորներին երկրի կառավարման բոլոր գործերում։ Մեր պարտիայի հիանալի տրադիցիաներից է դարձել երկրի տնտեսական և քաղաքական կյանքի կարևորագույն հարցերի շուրջ ժողովրդի հետ խորհրդակցելը, նրա ձայնին ունկնդրելը։

Սոցիալիզմից կոմունիզմին աստիճանաբար անցումն ամենևին չի նշանակում դանդաղ շարժում։ Ընդհակառակը, դա մի պրոցես է, որն ապահովում է մեր երկրի արագ անցումը դեպի կոմունիստական հասարակարգ։ Դրա համար մեր երկրում ստեղծված են օբյեկտիվ բոլոր պայմանները։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հասարակական բոլոր կազմակերպությունների դերի աճին զուգընթաց, անխուսափելիորեն աճում է նաև պարտիայի, որպես սովետական հասարակության ղեկավար ուժի դերը։ Դա սոցիալիստական հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունն է։ Որքան

խղճուկ են ժամանակակից ռևիզիոնիստների այն փորձերը, որով նրանք ցանկանում են ժխտել մարքսիստական-լենինյան պարտիայի անհրաժեշտությունը, նրա գործունեության շրջանակները սահմանափակելով կուլտուր-լուսավորական հարցերի ոլորտով։ ՍՄԿՄ գոյության չորս տասնամյակից ավելի փորձը, ամբողջ միջազգային կոմունիստական շարժման պրակտիկան աներկբայորեն ապացուցում են, որ առանց ռևոլյուցիոն մարքսիստական տեսությամբ զինված նման պարտիայի առկայության, խոսք անգամ չի կարող լինել հասարակության կոմունիստական վերափոխման մասին։

***

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ կոմունիզմի ժամանակ պետությունը կմահանա, վրա կհասնի հասարակության բոլոր գործերի ժողովրդական կառավարման, կոմունիստական ինքնավարության ժամանակաշրջան։ Հենց հասարակական կազմակերպությունների դերի ուժեղացումը, սոցիալիստական դեմոկրատիայի ծավալումը նախադրյալներ են ստեղծում դրա համար։ Կոմունիստական հասարակարգում պետական կառավարման ֆունկցիաները կկորցնեն իրենց քաղաքական նշանակությունը, սոցիալիստական պետությունը լուծած կլինի իր բոլոր ներքին խնդիրները։ Սակայն կա նաև այս հարցի մյուս կողմը։ Ինչպե՞ս վարվել, եթե այդ ժամանակ դեռևս պահպանվի կապիտալիստական լագերը։ Դրան մարքսիզմ-լենինիզմն ուղղակի պատասխանում է, որ հարկ կլինի պահպանել պետությունը, անվտանգության օրգանները, որոնք անհրաժեշտ են մեր երկիրը և ամբողջ սոցիալիստական լագերը իմպերիալիստական ագրեսիայից պաշտպանելու, նրա բոլոր ոտնձգությունները ձախողելու համար։

Պետության մահացման հարցը մեզ՝ կոմունիզմ կառուցող սովետական մարդկանց համար տեսական և քաղաքական կարևոր նշանակություն ունի։ Մարքսիզմի կլասիկներն իրենց աշխատություններում գիտականորեն հաստատել են, որ պետությունը կմահանա միայն լիակատար կոմունիզմի ժամանակ։ Աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը, որ պատմական նոր ժամանակաշրջանում բազմակողմանիորեն զարգացրեց պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքսիստական ուսմունքը, «Թեզիսներ և զեկուցում բուրժուական դեմոկրատիայի և պրոլետարիատի դիկտատուրայի մասին» իր աշխատության մեջ գրում է. «Պետական իշխանության ոչնչացումը մի նպատակ է, որ իրենց առաջ դրել են բոլոր սոցիալիստները, Մարքսն էլ նույն թվում և նրանց գլուխն անցած։ Առանց այդ նպատակի իրականացման իսկական դեմոկրատիզմը, այսինքն՝ հավասարությունն ու ազատությունը, անիրականանալի է։ Իսկ դեպի այդ նպատակը տանում է գործնականորեն միայն սովետական կամ պրոլետարական դեմոկրատիան, որովհետև աշխատավորների մասսայական կազմակերպությունները պետական կառավարման մեջ մշտական ու անպայման մասնակցություն ներգրավելով, նա սկսում է անհապաղ նախապատրաստել ամեն մի պետության կատարյալ մահացումը» (Երկեր, հ. 28, էջ 594)։

Բաղդատելով լենինյան այս հանճարեղ մտքերն այն բոլորի հետ, ինչ որ ասվեց ՍՄԿՊ XXI համագումարում սոցիալիստական պետության, լիակատար կոմունիզմի ժամանակ նրա մահացման մասին, ակնբախ է, թե որքան թան-



կագին ավանդ մուծեց պարտիայի պատմական համագումարը պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքսիստական-լենինյան ուսմունքի մեջ։

Ինչպես ցույց տվեց պարտիայի XXI համագումարը, պետության մահացման պայմանների նախապատրաստումը չի կարելի պատկերացնել պարզեցված, այն չի կարելի շփոթել սոցիալիստական պետության թուլացման հետ, մի հանգամանք, որ ձեռնտու կլիներ միայն մեր թշնամիներին։ Մեր պարտիան, բոլոր եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաները միահամուռ դատապարտեցին ռևիզիոնիստների այն կեղծ և կոմունիզմի գործի համար վնասակար տեսությունը, ըստ որի իբր այժմ արդեն սոցիալիստական պետությունը մահանում է, որ իբր պետությունը փաստորեն մահանում է արդեն սոցիալիստական ռևոլյուցիայից հետո։ Հիմնավորելով կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանում ուժեղ պետության անհրաժեշտությունը, Լենինը գրել է, որ անցումը կապիտալիզմից կոմունիզմին մի ամբողջ պատմական դարաշրջան է։ Քանի այն չի ավարտվել, շահագործողների մեջ անխուսափելիորեն մնում է ռեստավրացիայի հույսը, իսկ այդ հույսը ռեստավրացիայի փորձերի է վերածվում։ Հետևապես բանվոր դասակարգին անհրաժեշտ է ունենալ պետական իշխանություն, ուժի կենտրոնացած կազմակերպություն՝ շահագործող դասակարգերի դիմադրությունը ճնշելու, աշխատավոր մասսաներին իր և իր պարտիայի շուրջը համախմբելու, սոցիալիստական տնտեսություն կազմակերպելու համար։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ պետության մահացումը մի երկարատև պրոցես է, կապված, առաջին հերթին, շահագործող դասակարգերի լիակատար ոչնչացման, սոցիալիստական պետության ամրապնդման հետ։ «Պետության մահացման հարցը,— ասաց պարտիայի XXI համագումարում տված իր զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— եթե դա հասկանանք դիալեկտիկորեն, սոցիալիստական պետությունը կոմունիստական հանրային ինքնավարության վերածվելու հարց է։ Կոմունիզմի օրոք ևս կմնան պետական արդի ֆունկցիաներին համանման որոշ հասարակական ֆունկցիաներ, բայց նրանց իրականացման բնույթն ու եղանակները այլ կլինեն, քան զարգացման արդի ստադիայում»։

Սոցիալիստական հասարակարգի զարգացման բարձր աստիճանում պետությունը մահանալու է։ Դա մարքսիստական հանրահայտ ճշմարտություն է։ Սակայն պահպանվելու կամ ստեղծվելու են այնպիսի օրգաններ, որոնք պետք է կարգավորեն մարդկանց հարաբերությունները։ Դրանք կլինեն հասարակական կազմակերպություններ, կոմունիստական ինքնավարության օրգաններ, որոնց միջոցով հասարակությունը կկարգավորի իր հարաբերությունները։ Դեպի կոմունիզմ մեր հասարակարգի երթի հետ միասին, շատ ֆունկցիաներ, որ այժմ կատարում են պետական օրգանները, աստիճանաբար պետք է անցնեն հասարակական կազմակերպությունների տնօրինությանը։ Այժմ արդեն մենք ականատես ենք կոմունիստական ինքնավարության ծիլերին։ Պարտիայի XXI համագումարը նշեց, որ բնակչության կուլտուրական սպասարկման, առողջապահության, ֆիզկուլտուրայի և սպորտի հարցերը պետք է լուծվեն հասարակական կազմակերպությունների ակտիվ ու լայն մասնակցությամբ։ Հայտնի է, որ արդեն ֆիզիկական կուլտուրայի, սպորտի զարգացման գործը պետական օրգանների իրավասությունից անցել է արհմիությունների և այլ հասարակական կազմակերպությունների տնօրինությանը։

Հասարակական կազմակերպությունների դերի բարձրացման ակնառու օրինակ է ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը բանվոր ծառայողների հանգստի ու բուժման գործը արհմիությունների տնօրինությանը հանձնելու մասին։

Ահա, օրինակ, կուլտուրայի ժողովրդական համալսարանները, որոնք կուլտուր-լուսավորական աշխատանքի նոր ձևեր են։ Կարճ ժամանակամիջոցում երկրում ստեղծվել են երկու հազարից ավելի այդպիսի կուլտուրական օջախներ։ Կյանքը ցույց է տալիս, որ կուլտուրայի ժողովրդական համալսարանները կարող են մեծ դեր խաղալ աշխատավորների հոգևոր հարստացման, կոմունիստական գիտակցականության բարձրացման գործում։ Մասսաների ինքնագործունեության արդյունքն են նաև ժողովրդական թատրոնները, որոնք նույնպես տարածվելու և զարգանալու մեծ հեռանկարներ ունեն։

Մեր սոցիալիստական հասարակությունը աճել և այնպիսի ուժ է դարձել, որ կարող է վճռական դեր կատարել հասարակական կարգ ու կանոնի պահպանման գործում։ Հասարակական կարգի և սոցիալիստական համակեցության կանոնների պահպանման գործում պետական օրգանների, միլիցիայի, դատախազության, դատարանի հետ միասին ու զուգահեռ մեծ դեր կարող են կատարել և արդեն կատարում են այնպիսի հասարակական կազմակերպություններ, ինչպիսիք են՝ ժողովրդական դրուժինաները, ընկերական դատարանները և այլն։ Իրագործելով ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «Երկրում հասարակական կարգի պահպանմանը աշխատավորների մասնակցության մասին» որոշումը, պարտիական և սովետական օրգանները անսասած ուժեղացրել են իրենց ուշադրությունն այդ կարևոր գործի նկատմամբ։

Մեծ է ընկերական դատարանների դերն այն պայքարում, որ մղվում է հասարակական զանազան կարգի խախտումների դեմ։ Ընկերական դատարանները պետք է քննեն ոչ միայն արտադրական բնույթի, այլև կենցաղային, բարոյական բնույթի հարցեր։ Կարելի է բերել ընկերական դատարանների հաջող աշխատանքի շատ օրինակներ։ Սակայն դրանք դեռևս լայն տարածում չեն ստացել և պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ կյանքի կոչել, աշխուժացնել նրանց աշխատանքը։ Անհրաժեշտ է նաև ուժեղացնել ժողովրդական դատարանների օգնությունը ընկերական դատարաններին։

Ակներև է, որ սոցիալիստական օրինականության խախտումների դեմ մղվող պայքարում հասարակայնության դերի բարձրացման հաջողությունը վճռականորեն կախված է պարտիայի, նրա բոլոր կազմակերպությունների ամենօրյա կոնկրետ ղեկավարությունից։

Մեր սոցիալիստական հասարակության ընդերքում առաջ են եկել նաև կոմունիստական ինքնավարության այնպիսի ծիլեր, ինչպիսիք են՝ ձեռնարկություններում մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները, գիտատեխնիկական ընկերությունները, գյուտարարների և ռացիոնալիզատորների ընկերությունները, կամավոր սպորտային ընկերությունները։

Հարկ կա՞ ավելի մանրամասն խոսելու մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների մասին, քանի որ դրանք արտադրության ղեկավարման գործում աշխատավորների մասնակցության բազմազան ձևերից առավել կարևորն են։ Արհմիությունները, արտադրական խորհրդակցությունների միջոցով, պարտիայի ղեկավարությամբ, աշխատավորների մեջ դաստիարակում են կո-



մունիստական վերաբերմունք դեպի աշխատանքն ու սոցիալիստական սեփա-
կանությունը։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ցուցումով 1958 թվականին
ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀԱՄԿԽ-ը հաստատեցին արդյունաբերական
ձեռնարկություններում, կառույցներում, սովխոզներում, ՆՏԿ-ներում մշտա-
պես գործող արտադրական խորհրդակցությունների կանոնադրությունը։ Ար-
տադրական խորհրդակցություններին իրավունք է վերապահվում մասնակցել
ձեռնարկությունների ընթացիկ և հեռանկարային արտադրական պլանների
նախագծերի մշակմանն ու քննարկմանը, լսել ձեռնարկությունների կամ ցե-
խերի ղեկավարների հաղորդումները տնտեսական գործունեության արդյունք-
ների մասին։ Արտադրական խորհրդակցությունները քննարկում են ձեռնար-
կության արտադրության և աշխատանքի կազմակերպման ամենաբազմազան
հարցերը։ Այժմ նման արտադրական խորհրդակցություններ են ստեղծված
երկրի, ինչպես նաև մեր ռեսպուբլիկայի շատ ձեռնարկություններում։ Ամբողջ
ՍՍՌՄ-ում, արտադրական խորհրդակցություններում ընտրված են 7 միլիոն
բանվորներ և ծառայողներ։ Հայկական ՍՍՌ ձեռնարկություններում ստեղծվել
է 827 մշտական գործող արտադրական խորհրդակցություն, որոնցում ընդ-
գրկված է 33,551 աշխատող։ Կյանքը ցույց է տալիս, որ մշտական գործող
արտադրական խորհրդակցություններն արդեն մեծ հեղինակություն են ձեռք
բերել և արտադրության բարելավման, մասսաների ստեղծագործական նախա-
ձեռնության զարգացման հիանալի միջոց են։

Անտարակույս, որքան առաջ շարժվենք դեպի կոմունիստական հասարա-
կարգը, այնքան ավելի բազմազան ու բազմաթիվ կդառնան կամավոր հասա-
րակական կազմակերպությունները։ Կոմունիստական հասարակական ինքնա-
վարության ձևերը ոչ միայն չեն սպառվել, այլ ընդհակառակը, նրանք նոր են
սկսում ծնունդ առնել ու կազմավորվել։ Հետագայում, ավելի զարգանալով ու
կատարելագործվելով, դրանք կկազմեն կոմունիստական հասարակական ինք-
նավարության մի ամբողջ սիստեմ։

Սոցիալիստական պետականությունից կոմունիստական ինքնավարության
անցումը մի օրինաչափ պրոցես է, որը կապված է կոմունիզմի լիակատար
հաղթանակի համար նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի հոգե-
վոր կուլտուրայի, կոմունիստական գիտակցականության բարձր զարգացման
հետ։ Ահա թե ինչու այդ անցումը կկատարվի աստիճանաբար, երբ դրա հա-
մար կհասունանան բոլոր անհրաժեշտ օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանները։

# ԲԱՑԱՍՄԱՆ ԲԱՑԱՍՈՒՄԻ ՕՐԵՆՔԸ

ՀՐ. ՇԱՔԱՐՅԱՆ

Իրականության մեջ զարգացման, նորի առաջացման էական կողմերին, անհրաժեշտ կապակցություններին է վերաբերում դիալեկտիկայի բացասման բացասումի օրենքը։ Եթե հակադրությունների պայքարի և միասնության օրենքը վերաբերում է շարժման աղբյուրին, իսկ քանակից որակին անցման օրենքը՝ զարգացման ընթացքին, առարկաների ու երևույթների անցումներին որակական մեկ կացությունից դեպի մի այլ կացություն, ապա բացասման բացասումի օրենքը պատասխանում է այն հարցերին, թե ի՛նչ ընդհանրություններ ու տարբերություններ կան զարգացման միևնույն շղթայի տարբեր օղակների միջև, ի՛նչ ուղղությամբ է ընթանում զարգացումը և ի՛նչ օրինաչափությունների հիման վրա է նորը, առաջավորը իր հաղթանակը ազդարարում հնի, իր դարն ապրածի նկատմամբ։

## ա. Բացասման էությունը

Առօրյա կյանքում մենք միշտ ականատես ենք նոր երևույթների, նոր որակների առաջացման. ամենուրեք հինը մեռնում է, նրա տեղը գրավում են նոր որակներ, տվյալ երևույթի զարգացման նոր աստիճաններ։ Բնական է, որ որևէ հարաբերություն պետք է սահմանվի երևույթի զարգացման յուրաքանչյուր հաջորդ էտապի և նրա նախորդ աստիճանի միջև, հատկապես, երբ նկատի ենք ունենում այն հանգամանքը, որ յուրաքանչյուր որակական որոշակիությունից ծնունդ են առնում ոչ թե ամեն կարգի երևույթներ, այլ որոշակիորեն որևէ համապատասխան երևույթ։ Նշանակում է ինչ-որ ներքին կապ, ներքին ընդհանրություն կա տվյալ երևույթի զարգացման տարբեր վիճակների միջև։ Միաժամանակ զարգացման մեջ ամեն մի նոր աստիճան ներկայացնում է իբրև նոր որակ, նոր երևույթ՝ նախորդ որակների նկատմամբ։ Կապիտալիստական հասարակարգը ծնունդ առավ ֆեոդալական հասարակարգից։ Այն, որ ֆեոդալիզմի ընդերքում կազմավորվեցին բուրժուական և ոչ թե սոցիալիստական արտադրահարաբերություններ, խոսում է այդ երկու հասարակարգերի որոշ ընդհանրական կողմերի գոյության մասին։ Միաժամանակ բուրժուական հասարակարգը ծնունդ առնելով՝ նոր աստիճան, նոր որակ նշանավորեց հասարակության զարգացման մեջ։ Բուրժուական հասարակարգի առաջացումը ոչ այլ ինչ է նշանակում, քան ֆեոդալական հասարակարգի բացասում։

Բացասումը օբյեկտիվ օրինաչափություն է, այն վերաբերում է առարկաների ու երևույթների ներքին, անհրաժեշտ կապակցություններին։ Որևէ երևույթի բացասում նշանակում է հին որակից նորի առաջացում։ Ընդ որում նոր որակը ծնունդ է առնում հնի բազայի վրա, հնի ընդերքում և, իբրև այդպիսին, իր գոյությամբ նշանավորում է հնի մահացումը և նորի առաջացումը։ Մատերիալիստական դիալեկտիկան, հարազատ լինելով օբյեկտիվ իրականությանը, նշում է, որ զարգացման պրոցեսում ստացված նորը ոչ այլ ինչ է, քան հինը իր վերափոխված ձևով, այլ կերպ ասած՝ նորը կազմավորվելով հնի բազայի վրա, հնից վերցնում է այն ամենը, ինչ կենսունակ է, ինչ առաջավոր է, այսինքն՝ զարգացման տենդենցի կրողն է և ընդհակառակն՝ դեն է նետում այն, ինչ արդեն իր դարն ապրել, պատմականորեն իրեն սպառել է։ Այս երկու մոմենտները՝ հնի պահպանումը իր դրական բովանդակությամբ ու ժխտումը՝ իր բացասական դրսևորումների մեջ և դրանով իսկ նոր որակի հաստատումը կազմում են դիալեկտիկական բացասման էությունը՝ ի տարբերություն բացասման մետաֆիզիկական ըմբռնման։ Մետաֆիզիկի համար նշել նոր երևույթի առաջացումը, նշանակում է բացարձակորեն ժխտել հին վիճակը, առանց որևէ կողմի պահպանման։ Այդ իսկ պատճառով մետաֆիզիկական բացասումը սուբյեկտիվ բնույթ ունի, այն իրականության զարգացման տենդենցների ադեկվատ արտացոլումը չէ։ Իսկ «դիալեկտիկայի մեջ բացասել,— գրում է Էնգելսը,— չի նշանակում պարզապես «ոչ», կամ որևէ իր հայտարարել գոյություն չունեցող և կամ որևէ ձևով ոչնչացնել այդ իրը»։ Հեգելի փիլիսոփայությունը քննադատվեց թե՛ Ֆոյերբախի, թե՛ Մարքսի կողմից։ Առաջինը չնքից մերժեց Հեգելի փիլիսոփայությունը, մերկ ժխտման ենթարկեց այն, մինչդեռ Մարքսը քննադատության զենքով հաղթահարեց Հեգելին, վերցրեց նրա փիլիսոփայությունից այն արժեքավորը, որը մտնում է թեորիական մտքի ընդհանուր նվաճումների մեջ, այն է՝ զարգացման գաղափարը։

Ինչ վերաբերում է որևէ երևույթի կամ տեսակի, օրինակ, կենդանի օրգանիզմի ոչնչացմանը, ապա այն նույնպես օբյեկտիվ պրոցես է, սակայն, ի տարբերություն բացասման մեր վերոհիշյալ ըմբռնման, այն տվյալ երևույթի զարգացման ներքին տենդենցի արտահայտությունը չէ, ընդհակառակն՝ արտաքին անբարենպաստ պայմանների շնորհիվ այդ երևույթի զարգացման ներքին տենդենցների ոչնչացումն է։ Տվյալ երևույթի ոչնչացումը տեղի է ունենում այն ժամանակ, երբ ներքին հակասությունների նկատմամբ արտաքին հակասությունները դոմինանտ նշանակություն են ձեռք բերում։ Բարենպաստ պայմանների դեպքում գարու հատիկի բացասումը ցողունի կողմից զարգացում է ենթադրում, մինչդեռ նրա սոսկ ոչնչացումը բացառում է հետագա զարգացման հնարավորությունը։ Երևույթի զարգացման բնական ընթացքի համար պահանջվում է այնպիսի բացասում, որից զարգացում է ստացվում։ «Ես պետք է այնպես բացասեմ,— գրում է Էնգելսը,— որ հնարավոր լինի կամ հնարավոր դառնա երկրորդ բացասումը»։

Կարելի է պնդել, թե գարու հատիկի ոչնչացումը բացարձակ անէացում չի նշանակում և, ընդհանրապես, բնության մեջ նման երևույթի չենք հանդիպում. մատերիայի այդ ձևը ոչնչացնելով՝ նրան այլ ձև ենք տալիս, իսկ զարգացումը ամենուրեք ներհատուկ է մատերիային։ Անկասկած գարու հատիկը, իբրև նյութի, զարգացումը ենթակա չէ ոչնչացման, սակայն այն աղալու դեպքում մենք ոչնչացնում ենք ոչ թե նյութը կամ շարժումն ու զարգացումը ընդհանրապես, այլ նյութի տվյալ տեսակը իբրև այդպիսին, զարգացման տվյալ դրսևորումը իր բնական ընթացքի մեջ։ Դրանով իսկ մերկ բացասումը տեղ չի թող-

նում տվյալ երևույթի հետագա, նոր բացասման համար։ Որքանով որ այն մահ է նշանակում տվյալ տեսակի զարգացման համար, այդ պատճառով նման բացասումը չի արտահայտում զարգացման ներքին ընթացքը և խորթ է բացասման դիալեկտիկական ըմբռնման ոգուն։

Բացասման մետաֆիզիկական ըմբռնումը երևույթը ընդգրկում է ոչ թե իր համակողմանիության, այլ միակողմանիության մեջ։ Մետաֆիզիկական մտածելակերպը կամ բացարձակապես սահմանազատում է հին որակը նոր որակից, կամ սկզբունքային ոչ մի տարբերություն չի տեսնում որակների մեջ։ Այդ պատճառով այն իրական կապակցությունների միակողմանի, գռեհկացված արտացոլումն է։

Դիալեկտիկական սկզբունքին համաձայն նոր որակի առաջացումը հին որակի թե՛ հաղթահարումն է, թե՛ պահպանումը. հաղթահարումն է այնքանով, որքանով ժխտվում է այն իբրև որակական որոշակիություն, միաժամանակ այն պահպանվում է, որքանով նոր որակը նախորդի ծնունդն է հանդիսանում և իր մեջ ներառնում է նրա ողջ դրական բովանդակությունը։

Այսպես կոչված էլեմենտար մասնիկների մեխանիկան, կամ քվանտային մեխանիկան, իբրև ճանաչողության զարգացման որոշակի աստիճան, բացասում է նշանակում կլասիկ մեխանիկայի նկատմամբ, որքանով որ նրա ստեղծմամբ մերժվեց վերջինիս սկզբունքների բացարձակ լինելու մասին պատկերացումը և, միաժամանակ, ցույց տրվեցին այն շրջանակները, որտեղ այդ սկզբունքները պահպանում են իրենց ուժը։ Իր հերթին հաջողություն չունեցավ նաև քվանտային մեխանիկան միկրոպրոցեսների ունիվերսալ թեորիա համարելու՝ որոշ ֆիզիկոսների փորձը։ Այժմ հայտնի է, որ քվանտային մեխանիկան կիրառելի չէ ներկորզային պրոցեսների, ինչպես նաև էլեմենտար մասնիկների ներքին ստրուկտուրայի նկատմամբ։ Այսպես, իմացության զարգացման յուրաքանչյուր հաջորդ էտապ նախորդի թե՛ ժխտումն է, թե՛ պահպանումը, թե՛ ժառանգումը, թե՛ հաղթահարումը։

Դիալեկտիկան պահանջում է ամեն մի բացասման մեջ ո՛չ միայն տեսնել մերժման և ժառանգման մոմենտները, այլև բացահայտել այդ մոմենտների իրական փոխհարաբերությունը։ Վ. Ի. Լենինը գրել է. «Ոչ թե մերկ բացասումը, ոչ թե դատարկ բացասումը, ոչ թե սկեպտիկ բացասումը, տատանումը, կասկածանքն է հատուկ և էական դիալեկտիկայի մեջ,— որը, անկասկած, իր մեջ բովանդակում է բացասման էլեմենտ և այն էլ իբրև իր կարևոր էլեմենտը (ընդգծումն իմն է — Հր. Ճ.),— ոչ, այլ բացասում, իբրև կապի մոմենտ, իբրև զարգացման մոմենտ, դրականի պահպանումով, այսինքն՝ առանց որևէ տատանման, առանց որևէ էկլեկտիկայի» («Философские тетради», стр. 197)։

Ընդգծված դրույթը այն խոր միտքն է պարունակում, որ բացասման երկու կողմերը՝ ժառանգման կամ պահպանման և ժխտման մոմենտները միասնության մեջ գտնվելով հանդերձ՝ հավասարանշանակ չեն։ Բացասման պրոցեսում այս հակադրությունների միասնության մեջ հակասության գլխավոր կողմը ժխտումն է, որովհետև բացասման հետևանքով ստացված նոր որակում անցյալ վիճակից պահպանվածը այն ընդհանուրն է, որը գոյություն ունի հին և նոր երևույթների միջև, որով նմանվում, նույնանում են հինն ու նորը։ Մինչդեռ նոր որակի էությունը բնորոշողը ոչ թե հնից ժառանգածն է, այլ ժխտման շնորհիվ ստեղծված նորը։ Եթե մենք բացասման մեջ շեշտը դնենք ոչ թե ժխտման, այլ պահպանման, ընդհանրության վրա, ապա հազիվ թե սկզբունքային տարբերություն տեսնենք հին և նոր որակների միջև։ Մարքսը Հեգելի ու Ֆոյերբախի փիլիսոփայությունից վերցրեց այն բոլորը, ինչ գիտական, կենսունակ, առաջավոր էր։ Սակայն Մարքսի փիլիսոփայության էությունը բնորոշողը ոչ թե այն է, ինչ նա վերցրել է Հեգելից կամ Ֆոյերբախից, այլ, հատկապես այն, ինչով նա սահմանազատվում է թե՛ առաջինից, թե՛ երկրորդից, ինչով պրոլետարիատի գաղափարախոսությունը արմատապես տարբերվում է բուրժուազիայի գաղափարախոսությունից։ Հետևապես, բացասման մեջ պահպանման և ժխտման մոմենտները մատնացույց անելով հանդերձ, անհրաժեշտ է ցույց տալ նաև, թե այդ երկու կողմերից ո՛րն է դոմինանտ նշանակություն ձեռք բերում տվյալ պրոցեսում, այլ կերպ ասած՝ անհրաժեշտ է ցույց տալ, թե ո՛ր կողմով է գլխավորապես բնորոշվում տվյալ պրոցեսի էությունը։



Սակայն, երբ դիալեկտիկան ընդգծում է հիմնականը, հակասության գլխավոր կողմը, երբեք էլ չի անտեսում երկրորդականը, հակասության ոչ գլխավոր կողմը։ Սոցիալիզմը որակապես նոր հասարակարգ համարելով կապիտալիզմի նկատմամբ՝ Մարքսի դիալեկտիկան, հարազատ մնալով իր գիտական ոգուն, չի կարող չնկատել բուրժուական հասարակարգում ստեղծված այն արժեքավորը, այն ամենը, որոնք մնայուն են, որոնք մտնում են մարդկային կուլտուրայի ընդհանուր գանձարանը։ Եվ հենց այդ մնայունն է, որ հաջորդաբար անցնում է մի հասարակարգից դեպի մի նոր հասարակարգ և մարդկային հասարակության պատմությունը ներկայացնում է որպես ներքնապես միասնական մի օրինաչափ պրոցես։

Նախորդից վերցվածը, իր հերթին, զուտ ձևով չի պահպանվում հաջորդ աստիճանում. այն դրվում է նոր, ավելի բարձր կապակցությունների մեջ, որի շնորհիվ ավելի խոր ու բազմակողմանիորեն է դրսևորվում նրա էությունը։ Մարքսը չնայած վերցրեց Հեգելի դիալեկտիկայի դրական հատիկը, բայց նա վերջինս այնպես ազատեց իր միստիկական կեղևից և այնպես բացահայտեց, գործողության մեջ դրեց նրա ռևոլյուցիոն ոգին ու հարստացրեց այն, որ Մարքսի դիալեկտիկան Հեգելի դիալեկտիկայի ուղղակի հակադրությունը հանդիսացավ։

Զարգացման պրոցեսում բացասումը, ըստ էության, ինքնաբացասում է։ Տվյալ երևույթը ինքն է ստեղծում իր բացասման հնարավորությունները, ինքն է ստեղծում այն պայմանները, որոնք հնարավորություն են տալիս նախկին որակի հակադիր կողմերին՝ կատարելու տեղերի փոխանակություն։ Այլ կերպ ասած, նախկին որակի շրջանակներում գործող հակադրությունների պայքարը ներքին անհրաժեշտությամբ հասցնում է մի վիճակի, երբ հակադրության գլխավոր կողմը իր տեղը զիջում է հակադրության մյուս կողմին, որով և ապահովվում է նոր որակի առաջացումը։ Բուրժուական հասարակարգը զարգացման իր ներքին տենդենցների շնորհիվ ինքը ստեղծեց այն բոլոր պայմանները, որոնք անհրաժեշտ են բուրժուազիայի փոխարեն՝ իբրև իշխող դասակարգ պրոլետարիատի հանդես գալու համար, այսինքն՝ բուրժուական հասարակարգի ինքնաբացասման և սոցիալիստական հասարակարգի ստեղծման համար։ Ուստի, որևէ երևույթի տվյալ վիճակի բացասման համար անհրաժեշտ է, որ այդ երևույթը իբրև կանոն մաքսիմում զարգացման հասնի, որը ըստ էության ոչ այլ ինչ է, քան ինքնաբացասման, նորի առաջացման համար համապատասխան պայմանների ստեղծման պահանջ։ 1905 և 1907 թթ. բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակի համար բոլշևիկների պայքարը ոչ թե Ռու-

տատանում բուրժուական կարգերի հաստատում ու կայունություն էր հետապնդում, այլ միայն և միայն սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստում։ Ահա թե ինչու էր Վ. Ի. Լենինը գրում, թե այդ բուրժուական ռևոլյուցիան որոշ իմաստով ավելի շահավետ է պրոլետարիատի համար, քան բուրժուազիայի։

Սակայն մաքսիմում զարգացման վերաբերյալ դիալեկտիկայի այդ ընդհանուր պահանջը չի բացառում, որ երևույթների զարգացման պրոցեսում, արտաքին բարեհաջող պայմանների դեպքում, հնարավոր են այս կամ այն միջանկյալ օղակների շրջանցումներ, ինչպես այդ տեղի ունեցավ միջինասիական կամ Ռուսաստանի հյուսիսային և արևելյան շրջանների որոշ ժողովուրդների կյանքում, երբ նրանք Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ զարգացման նախակապիտալիստական վիճակներից անցում կատարեցին դեպի սոցիալիստական կացութաձևը։

Ինչպես դիալեկտիկայի մյուս օրենքները, այնպես էլ բացասման բացասման օրենքը վերաբերում է երևույթների զարգացման ամենաընդհանուր գծերին, այն ամրագրում է զարգացման ընդհանուր տենդենցը իրականության ողջ օբյեկտիվ ընթացքում։ Իսկ կոնկրետ երևույթների յուրօրինակությունները, մասնավորությունները դրսևորվում են իբրև այդ ընդհանուր տենդենցի արտահայտման կոնկրետ եղանակներ։ Այդ պատճառով էլ թե՛ թեորիայում, թե՛ պրակտիկայում ընդհանրապես բացասման ըմբռնումը իր աբստրակտ վիճակում դեռևս ճշմարտությունը չէ։ Կոնկրետ երևույթների բացասումից դուրս ընդհանրապես բացասում գոյություն չունի, այն միշտ դրսևորվում է կոնկրետ երևույթների բացասման ձևով և նրանց մեջ։ Այդ պատճառով բոլոր երևույթների համար միայն ընդհանրականի իմացությունը դեռևս աղքատ է, եթե այն չի զուգակցվում երևույթների մեջ իր կոնկրետ դրսևորումների հետ։ Յուրաքանչյուր երևույթի բացասում պետք է քննել իր յուրահատուկ դրսևորման, իր սպեցիֆիկ միջնորդավորումների ու կապակցությունների մեջ, որը և բխում է ճշմարտության կոնկրետության մասին դիալեկտիկայի պահանջից։

### բ. Բացասման բացասումը և զարգացման վերընթաց բնույթը

Շարժման դիալեկտիկական ըմբռնման համաձայն բացասման հետևանքով ստացված ամեն մի նոր աստիճան ենթադրում է զարգացման ավելի բարձր վիճակ. դրա պատճառն այն է, որ ամեն մի նոր որակ նախորդ որակների կենսունակ կողմերի ու կենսունակ հետևանքների ժառանգորդն է հանդիսանում ավելի բարձր մակարդակի վրա։ Այլ կերպ ասած, զարգացման շղթայում յուրաքանչյուր հաջորդ օղակ իր մեջ բովանդակում է նախորդ օղակները՝ վերածված ձևով։ Նորն իր զարգացմամբ ողջ նախորդ ընթացքի առաջավորի կրողն է հանդիսանում, որը և պայմանավորում է նրա անհաղթելիությունը զարգացման պրոցեսում։ Այսպիսով, բացասման բացասումը հանդես է գալիս իբրև զարգացման ներքին էական կողմ, իբրև զարգացման օրենք։ Զարգացման պրոցեսում ամեն մի էտապ լոկ անցողիկ էտապ է և արդարացվում է միայն իր պայմաններում. բացասման հետևանքով ստացված ամեն մի աստիճան անխուսափելիորեն ենթակա է բացասման՝ զարգացման հետագա, ավելի բարձր էտապների կողմից։

Բայց ինչպիսի՞ն է զարգացման ընթացքը, դեպի ո՞ւր է տանում զարգացման տենդենցը։ Տեսական մտքի պատմության մեջ այս հարցին հիմնականում երկու կարգի պատասխան է տրվել. մեկը կապվում է, այսպես կոչված՝ շրջապտույտի տեսության հետ, իսկ մյուսը՝ վերընթաց զարգացման գաղափարի հետ։ Առաջին տեսակետը պաշտպանվել է տարբեր դարաշրջաններում և համապատասխանաբար տարբեր դեպքերում տարբեր բովանդակություն է ստացել։ Մեծ չափով այն ընթացքի մեջ է դրվել իտալացի խոշոր սոցիոլոգ Վիկոյի (1668—1744) կողմից։ Վիկոն հասարակության զարգացումը ներկայացրել է իբրև աստվածային (մարդկության մանկության), հերոսական (մարդկության պատանեկության) և մարդկային (հասունության) աստիճանների հաջորդականություն, որից հետո սկսվում է անկումը, վերադարձը դեպի նախնական էտապը։ Հետագայում շրջապտույտի նման տեսակետ են պաշտպանել պոզիտիվիստական փիլիսոփայության ներկայացուցիչները, նեխող կապիտալիզմի գաղափարախոսության արտահայտիչներ Նիցշեն, Շպենգլերը և ուրիշներ։ Այժմ այն բավականին հարգի է ժամանակակից բուրժուական սոցիոլոգիայում։ Ժամանակակից անգլիական բուրժուական խոշոր պատմաբան Թոյնբին քաղաքակրթության զարգացումը ներկայացնում է իբրև «ստեղծագործ փոքրամասնության» գործունեության արդյունք, իսկ երբ հասարակությունը զարգանում, հասնում է մի էտապի, ուր հնարավորություն է ընձեռվում «ոչ ստեղծագործ մեծամասնության» հաղթանակի համար, վրա է հասնում հասարակության մահը, նորից է սկսվում զարգացման ցիկլը և այսպես շարունակ։ Սակայն, եթե պրոգրեսիվ բուրժուազիայի գաղափարախոս Վիկոյի մոտ շրջապտույտի տեսությունը պատմականորեն դրական դեր է կատարել, որքանով այն մի փորձ է հանդիսացել հասարակության զարգացումը դիտելու իբրև օրինաչափ երևույթ՝ կրոնի բնագավառից այն գիտության իրավասության շրջանակները տեղափոխելով, ապա շրջապտույտի մյուս ըմբռնումները արտահայտում են արդեն իշխանության հասած, իսկ ապա նաև ռեակցիոն դարձած բուրժուազիայի գաղափարախոսությունը, մի գաղափարախոսություն, որն իր դասակարգի վախճանը ներկայացնում է իբրև մահ ընդհանրապես հասարակության համար։

Ապագայի նկատմամբ պեսիմիզմի նման դրսևորման ձև է հանդիսանում նաև արդի բուրժուական սոցիոլոգիայում տեղ գտած այն հայացքը, ըստ որի կարելի է միայն խոսել սոցիալական փոփոխությունների մասին, բայց թե այդ փոփոխությունները ի՞նչ ուղղությամբ են գնում, իբր հնարավոր չէ իմանալ։

Զարգացման վերընթացության գաղափարը առաջին անգամ իր լայն արտահայտությունն է գտել Հեգելի փիլիսոփայության մեջ։ Հենց բացասման բացասման օրենքը, որը զարգացման վերընթացությունն է նշում, իր ձևակերպումն է ստացել Հեգելի կողմից։ Սակայն Հեգելի փիլիսոփայության մեջ այն չէր կարող իր դրական բովանդակությամբ ներկայանալ, որքանով որ Հեգելի մոտ, նախ՝ դիալեկտիկայի հիմնախարիսխը իդեան է և ոչ թե իրական նյութական աշխարհը և ապա՝ այս օրենքը Հեգելին ներկայանում էր իբրև այն հիմնական չափանիշը, որին համապատասխան ստեղծված է նրա ողջ սիստեմը։ Իսկ սիստեմը մահ է նշանակում զարգացման համար։ Բացասման բացասման օրենքի ծառայեցումը իբրև միջոց մետաֆիզիկական սիստեմ ստեղծելու նպատակով՝ չէր կարող սխեմատիկ բնույթ չտալ այդ օրենքին և չմեռցնել նրա մեջ զարգացման վերընթացության ոգին։

Բացասման բացասման օրենքի գիտական բովանդակության բացահայտումը տրվել է մատերիալիստական դիալեկտիկայում։ Այստեղ ընդգծվեց նաև

այդ օրենքի էական կողմերից մեկը՝ զարգացման վերընթացությունը։ Եթե երևույթի զարգացման շղթայում օրինաչափորեն ծնվող ամեն մի նոր էտապ տվյալ երևույթի զարգացման մեջ ավելի բարձր աստիճան է ենթադրում, ապա զարգացումը ընթանում է ցածրից դեպի բարձրը, պարզից դեպի բարդը. մի պրոցես, որն ակնհայտորեն երևում է թե՛ բնության մեջ ու հասարակական կյանքում և թե մարդկային ճանաչողության զարգացման ողջ ընթացքում։ Սակայն այդ վերընթացությունը այնպիսի բնություն ունի, որ զարգացման բարձր աստիճաններում կրկնվում են անցած աստիճանները կամ նրանց որոշ գծերը, որը, կարծես թե, վերադարձ է նշում դեպի հինը։ Ֆ. Էնգելսը ցույց է տալիս, թե ինչպես անտիկ տարերային մատերիալիզմը, ընդունակ չլինելով պարզելու հոգու և մատերիայի փոխհարաբերության հարցը, բացասվեց իդեալիզմի կողմից, վերջինս, իր հերթին, փիլիսոփայության զարգացման ընթացքում սնանկ դուրս եկավ և բացասվեց ժամանակակից մատերիալիզմի կողմից։ «Ժամանակակից մատերիալիզմը—բացասման բացասումը—ո՛չ թե հին մատերիալիզմի լոկ վերակենդանացումն է, այլ վերջինիս մնայուն հիմունքներին նա ավելացնում է նաև փիլիսոփայության և բնագիտության երկու հազարամյա զարգացման... բովանդակությունը... Այսպիսով փիլիսոփայությունը (մինչմարքսյան փիլիսոփայությունը—Հր. Շ.) վերացված է», այսինքն՝ «միաժամանակ և՛ հաղթահարված է, և՛ պահպանված», հաղթահարված է ըստ ձևի և պահպանված՝ ըստ իր իրական բովանդակության» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, 1952 թ., էջ 178)։

Անհրաժեշտ է նշել, որ այս օրենքի նման բացատրությունը ոչինչ ընդհանրություն չունի նրա հեգելյան ըմբռնման հետ։ Հեգելի մոտ երևույթի զարգացման եռաստիճանությունը(«տրիադա») պարտադիր կամ համարյա պարտադիր մոմենտ է, որով ավարտվում է զարգացման ցիկլը, իսկ մարքսիստական դիալեկտիկան պարտադիր չի համարում որոշակի աստիճանների սահմանումը։ Հեգելի մոտ իրական զարգացումը հարմարեցվում է այդ եռաստիճան սխեմային. վերջինս նրա մոտ պրոկրուստյան մահճի դեր է կատարում, իսկ Մարքսի մոտ ամեն մի օրենքի հիմքը օբյեկտիվ իրականությունն է. օրենքը արժեքավորվում է այնքանով, որքանով ադեկվատ կերպով է արտացոլում իրերի օբյեկտիվ ընթացքը. իսկ վերջինս կարող է թե՛ եռաստիճան լինել, թե՛ քառաստիճան, թե՛ բազմաստիճան։

Զարգացման այդ աստիճանները իրականում հարմոնիկ կերպով, հանգիստ ու անարգել իրար չեն հաջորդում. կյանքը ամենուրեք շատ ավելի բարդ է, քան նրա մասին թեորիական դրույթներն են ենթադրել տալիս։ Իրականության մեջ նորի առաջացումը բարդ ու հակասական գործողություն է, այն կատաղի պայքարի միջոցով է կարողանում իր իրավունքները նվաճել։ Զարգացման վերընթացությունը սահուն ու հարթ պրոցես չէ, նրա այդ բարդությունը, հակասականությունը արտահայտելու համար մարքսիզմի կլասիկները վերընթաց շարժումը համեմատել են սպիրալի հետ։ Շարժման սպիրալաձև ներկայացումը պատկերավոր կերպով ցուցադրում է թե՛ շարժման վերընթացությունը, թե՛ այդ վերընթացության ոչ ուղղագծությունն ու բարդությունը և թե նախորդ աստիճանների հայտնի կողմերի կրկնությունը ավելի բարձր աստիճանների վրա։

Բայց դիալեկտիկան անբնական չի համարում զարգացման պրոցեսում նաև ետընթաց շարժումները: Վ. Ի. Լենինը գրել է, որ «...համաշխարհային պատմությունը հարթ կերպով ու ճշտապահորեն առաջ ընթացող, առանց երբեմն ետընթաց հսկայական թռիչք կատարող մի բան պատկերացնելը դիա-



լեկտիկական չէ, գիտական չէ, թեորիապես սխալ բան է» (Երկեր, հ. 22, էջ 416)։ Հենց կյանքի այդ պահանջն է արտահայտում զարգացման սպիրալաձև (և ոչ թե ուղղագիծ) բնույթի մասին դիալեկտիկական տեսակետը։ Բայց և այնպես «սպիրալի» վրա չեն երևում ետընթաց խոտորումները, այդ այն պատճառով, որ դիալեկտիկան ամրագրում է ընդհանուր օրինաչափությունը, երևույթների մեջ ամենաանհրաժեշտ կապակցությունները, իսկ շարժման մեջ ընդհանրականը, տիպականը ոչ թե ետընթաց մոմենտներն են, այլ վերընթաց տենդենցը։ Որքանով որ վերընթացությունը զիգզագներից ազատ չէ, օրինաչափության մեջ այն դրսևորվում է սպիրալի ձևով։

### գ. Հնի բացասման առանձնահատկությունները սոցիալիստական հասարակարգում

Դիալեկտիկայի օրենքներն իրենց ուժը պահպանում են մատերիայի ու հոգևոր կյանքի դրսևորման բոլոր բնագավառներում։ Սոցիալիստական հասարակարգն այդ տեսակետից բացառություն չի կազմում։ Այն հասարակական կյանքի զարգացման մեջ մի հսկայական առաջընթաց է նշանավորում և միաժամանակ զարգանում է դիալեկտիկայի օրինաչափությունների համաձայն։ Կարող է խոսք լինել միայն այդ օրենքների սպեցիֆիկ դրսևորումների մասին։

Սոցիալիստական հասարակարգն իբրև դասակարգային հասարակարգերից արմատապես տարբեր տնտեսակարգ շատ ավելի խոր բացասում է նշանակում հասարակական կյանքում։ Նախորդ հասարակական ֆորմացիաների համար ընդհանուր մասնավոր սեփականատիրական սկզբունքի ժխտումը հնարավորություն տվեց սկիզբ դնել անդասակարգ հասարակարգի պատմությանը։ Միաժամանակ արտադրության միջոցները արտադրության աշխատողներին հանձնելը և անտագոնիստական դասակարգերի վերացումը պայմանավորեցին յուրահատուկ վերաբերմունք անցյալի հոգևոր և նյութական կուլտուրայի նկատմամբ։

Եթե նախորդ հասարակարգերում անցյալի կուլտուրայի նկատմամբ վերաբերմունքը հիմնականում սահմանափակված է իշխող խավերի նեղ դասակարգային հետաքրքրության շրջանակներով, ապա սոցիալիստական հասարակարգում անցյալի դրական բովանդակության յուրացումը չի կատարվում որևէ խավի էգոիստական շահերով։ Աշխատավոր ժողովրդի առաջադիմական ձգտումները պահանջում են յուրացնել մարդկության ձեռք բերած բոլոր ամենաարժեքավոր նվաճումները։

Սակայն սոցիալիզմն իր գոյությամբ հասարակության զարգացման վերջին աստիճանը չի ենթադրում։ Սոցիալիզմը նույնպես ենթակա է զարգացման, փոփոխության, հետևապես նաև բացասման։ Բայց այստեղ մենք գործ ունենք յուրահատուկ բացասման հետ։

Սոցիալիստական հասարակարգը իբրև հասարակության զարգացման ավելի բարձր աստիճան, զարգացման ավելի մեծ ընթացք է ենթադրում, մի բան, որն ակնառու կերպով վկայում է նրա 43-ամյա պատմությունը։ Իսկ առաջընթացը ոչ այլ ինչ է, քան հին վիճակների հաղթահարումը, նրանց փոխարինումը նոր, ավելի բարձր վիճակներով։ Սխալ կլիներ, եթե բացասումը ըմբռնվեր միայն իբրև ամբողջ երևույթի (տվյալ դեպքում հասարակարգի) արմատական փոփոխության ձևով։ Ինչպես քանակական փոփոխությունները,

էնգելսի բնութագրմամբ, փոքր մասշտաբի որակական անցումներ են ենթադրում, այնպես էլ բացասումը ո՛չ միայն վերաբերում է ամբողջությամբ վերցրած տվյալ երևույթի արմատական փոփոխությանը, այլև նրա առանձին կողմերի, առանձին հատկանիշների փոփոխությանը։ Յուրաքանչյուր նոր կողմի, նոր հատկանիշի կազմավորումը իր սահմաններում բացասում է նշանակում՝ հին հատկանիշների ու կողմերի նկատմամբ։ Տվյալ երևույթի առանձին բնագավառներում տեղի ունեցած անցումների, բացասումների գումարը տալիս է երևույթի բացասումը իր ամբողջության մեջ։

Սովետական Միությունում քաղաքական, տնտեսական, գաղափարական, կուլտուրական և այլ բնագավառներում տեղի ունեցած ռևոլյուցիաները, բացասումները, նշանավորեցին սոցիալիզմի կառուցումը մեր Հայրենիքում. առանձին բնագավառներում բացասումների ամբողջությունը տվեց հին Ռուսաստանի բացասումը նոր վիճակի՝ ՍՍՌՄ-ի կողմից։ Իրենց մասշտաբի բացասումներ են նաև պարտիայի XX համագումարից հետո գյուղատնտեսության պրակտիկայում, արդյունաբերության ու շինարարության ղեկավարման մեջ, կրթական սիստեմում և այլուր տեղի ունեցած խոշոր տեղաշարժերը։ Տարբեր բնագավառներում այդ կարգի փոփոխությունները նախադրյալներ են ստեղծում առավել խոշոր թռիչքի՝ կոմունիզմի կառուցման համար, մի գործ, որի պրակտիկ ձեռնարկումը ազդարարվեց ՍՄԿՊ XXI համագումարի կողմից։

Այս կարգի բացասումը կապիտալիստական աշխարհի համապատասխան բացասումներից արմատապես տարբերվում է նրանով, որ, եթե մեզ մոտ տնտեսության, կամ ընդհանրապես մեր կյանքում, կազմակերպման որևէ ձև հնանում է, այլևս չի համապատասխանում արտադրության զարգացման նոր պահանջներին, ապա այդ ձևը իբրև կանոն փոխարինվում է նորով՝ հենց որ այդպիսին գտնվում է, որովհետև թե՛ դրանով շահագրգռված կողմը, թե՛ արտադրության միջոցների տերը նույն ժողովուրդն է։

Դասակարգային անտագոնիզմի և դրա հետ միասին հասարակական ռեակցիոն խավերի բացակայությունը սոցիալիստական հասարակարգում օբյեկտիվորեն նորմալ պայմաններ է ստեղծում մեր կյանքի յուրաքանչյուր բնագավառի քննադատական վերլուծության և վերջինիս պրակտիկ ընթացք տալու համար։ Ինքը՝ քննադատությունը հենց բացասման դրսևորում է։ Իհարկե, միայն քննադատությամբ դեռևս բացասում տեղի չի ունենում։ Քննադատությունը տվյալ երևույթի դրական ու բացասական կողմերի մատնանշումն է լոկ, կամ նոր պայմաններում տվյալ երևույթի էության դրսևորման վերլուծությունն ու գնահատումը։ Մինչդեռ բացասումը պրակտիկ գործունեություն է, միայն պրակտիկայում կարելի է իրականացնել հնի փոխարինումը նորով։ Բայց քննադատությունը պայմանավորում է բացասումը, առանց քննադատության հնարավոր չի լինի կողմնորոշվել հնի և նրան փոխարինման կոչված նորի արժանիքներում ու թերություններում, համոզվել տվյալ բացասման, այդ պրակտիկ գործունեության անհրաժեշտության մեջ։ Իբրև այդպիսին քննադատությունը մեր կյանքի առաջընթացի հիմնական նախապայմաններից մեկն է։

Ինչպես ասվեց, բացասումը, մի կողմից՝ ժխտում է ենթադրում, մյուս կողմից՝ պահպանում. բացասումը այնպիսի ժխտում է, որն իր մեջ հաստատում է պարունակում։ Բացասման այդ երկակի բնույթը պայմանավորում է նրա երկու կարգի աղավաղման հնարավորությունը։ Այդ հնարավորությունները պահպանվում են նաև սոցիալիզմի պայմաններում, որտեղ, ինչպես և ամեն-



ուրեք, սուբյեկտիվ, ոչ գիտական, ոչ օբյեկտիվ վերաբերմունքի դեպքում նրանք կարող են հեշտությամբ վերածվել իրականության։ Այսպես, օրինակ՝ մի՞թե մերկ սկեպտիկ բացասման արտահայտություն չէր մեզ մոտ որոշ մարդկանց կողմից այն պնդումը, թե իբր բուրժուական երկրներում, նեխող կապիտալիզմի էպոխայում բացարձակապես ոչինչ դրական չի կարող ստեղծվել թե՛ տեխնիկայի և թե կուլտուրայի բնագավառում։ Նույնպիսի բացասման օրինակ են տալիս նաև միջազգային կոմունիստական շարժման մեջ այն գործիչները, որոնք XX համագումարում Ստալինի՝ անհատի պաշտամունքի արդարացի քննադատությունը նենգափոխեցին Ստալինի ողջ գործունեության ժխտմամբ։ Ընդ որում այդ ժխտումը իր հետագա էվոլյուցիայում շատ հեռուն գնաց. այն հասցվեց սոցիալիզմի կառուցման՝ Սովետական Միության փորձի ու լենինիզմի ժխտմանը և նոր դրսևորում տվեց ժամանակակից ռևիզիոնիզմին։

Եթե մեր պրակտիկայի ու մարքս-լենինյան գաղափարախոսության նկատմամբ արդի ռևիզիոնիզմի դիրքորոշումը սկեպտիկ բացասում է, ըստ էության՝ բացարձակ ժխտում, ապա բուրժուական հասարակարգի, բուրժուական դեմոկրատիայի և, ընդհանրապես, բուրժուական գաղափարախոսության նկատմամբ այն ոչ մի բացասում չի պարունակում։ Ռևիզիոնիզմը թեորիայում ոչ այլ ինչ է, քան սոցիալիզմի ընդհանուր օրինաչափությունների ժխտում, որը պրակտիկայում բուրժուական հասարակարգի շրջանակներում մնալ է ենթադրում։

Ինչպես իրավացիորեն նշում են մարքսիստ տեսաբանները, կոմունիզմը հասարակական-տնտեսական ֆորմացիա է, իբրև այդպիսին այն գործ ունի ընդհանրությունների, օրինաչափությունների հետ՝ անկախ այս կամ այն երկրի համար նրա կոնկրետ դրսևորումներից։ Սպեցիֆիկ, ազգային պայմանների անվան տակ ընդհանուր օրինաչափության ժխտումը, ըստ էության, կոմունիզմի սկզբունքների ժխտում է նշանակում, այլ կերպ ասած՝ բուրժուական հասարակարգի՝ սոցիալիստականի կողմից բացասման ժխտում, կապիտալիզմի հավերժացում։ Այն ուղղված է մարքսիզմի ռևոլյուցիոն ոգու դեմ և պատահական չէ, որ ռևիզիոնիզմը, սկսած Բեռնշտայնից, իր բոլոր դրսևորումների մեջ ծառացել է նախ և առաջ Մարքսի՝ իր հիմքում «ռևոլյուցիոն ու քննադատական» դիալեկտիկայի դեմ։

Բացասման մեջ սխալներից խուսափելու միակ երաշխիքը դիալեկտիկական մեթոդին հարազատ մնալն է, որովհետև այն զգուշացնում է հնարավոր սխալներից, յուրաքանչյուր սխալում մատնացույց է անում ելակետների միակողմանիությունը, սուբյեկտիվորեն իրականության այս կամ այն կողմի բացարձակացումը։ Ահա թե ինչու է դիալեկտիկան հետազոտության և պրակտիկ ղեկավարության միակ գիտական մեթոդը հանդիսանում։

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ՎԱՐՔԱԳԾԻ ՀԻՄՔԸ

ՍՏ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*Մարքսիզմ-լենինիզմի վեհ սկզբունքները, որոնք իրենց մարմնավորումն են գտել մեր ժողովրդի ձեռք բերած պատմական հաջողությունների մեջ, բնորոշում են աղգարնակչության ոչ միայն քաղաքական աշխարհայացքը, այլև նրա կենցաղը, առօրյան, բարոյական կերպարը։ Մեր կյանքում ամեն օր, ամեն ժամ տեղի են ունենում որակական լուրջ փոփոխություններ, այդ թվում նաև սովետական քաղաքացու աշխարհայացքում, վարվելակերպում, նրա բարոյական կերպարի մեջ։*

*Ամբողջ երկրով մեկ լայն ծավալ է ստացել կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի, բրիգադայի և հարվածայինի կոչման համար մղվող շարժումը, որն ընդգրկել է միլիոնավոր աշխատավորների, հատկապես մեր հիանալի երիտասարդությանը։ Այդ շարժման թևավոր նշանաբանը՝ «ապրել և աշխատել կոմունիստաբար, մեկը բոլորի, բոլորը՝ մեկի համար», դարձել է միլիոնավոր սովետական մարդկանց վարքի նորման։*

*Միանգամայն օրինաչափ է, երբ կոմունիստները հանդիսանում են նորի, առաջավորի նախաձեռնողները և կրքոտ պաշտպանները։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան իրավամբ հպարտանում է այն միլիոնավոր պարտիականներով, որոնք կյանքի բոլոր բնագավառներում ցույց են տալիս աշխատանքային հմտության, քաղաքական նվիրվածության, վեհ բարոյականության հիանալի օրինակներ։ Կոմունիստներ Վ. Գագանովայի, Ն. Մամայի, Ա. Գիտալովի և շատ ուրիշների անուններ հայտնի են մեր ամբողջ ժողովրդին։*

*Կոմունիզմի ծավալուն կառուցման առաջամարտիկներ են նաև մեր ռեսպուբլիկայի գործարաններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, գիտա-հետազոտական հիմնարկներում և այլ բնագավառներում աշխատող հազարավոր կոմունիստները։ Նրանք աշխատանքի տարբեր տեղամասերում անձնական օրինակով ոգևորում են աշխատավորությանը՝ պատվով կատարելու յոթնամյակի առաջադրանքները, անձնական կյանքում դրսևորում են մեր ժամանակի մարդու լավագույն հատկությունները։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Աշխեն Ավետիսյանի, Նազանի Գալստյանի, Աշոտ Նիկոյանի, Հոկտեմբերիկ Քոլոզյանի, Հրաչիկ Զաքոյանի, Աշոտ Մելքոնյանի, Սերյոժա Ամիրխանյանի և շատ-շատերի աշխատանքային համբավը տարածվել է ամբողջ ռեսպուբլիկայով մեկ։*

*Հասարակական պարտքի գիտակցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ է կոմունիստ Բաբկեն Կարախանյանի աշխատանքային գործունեությունը։ Զորացրվելով Սովետական Բանակից, 1946 թվականին երիտասարդ կոմունիստ Բ. Կարախանյանը, որն այն ժամանակ ուներ միջնակարգ կրթություն, շարքային աշխատանքի անցավ հայրենի Սարիար գյուղի կոլտնտեսությունում։ Շուտով կոմունիստները նրան ընտրեցին սկզբնական կազմակերպության բյուրոյի քարտուղար։ Երկու տարի հետո նա առաջ քաշվեց ՀԿՊ Ախուրյանի շրջկոմում աշխատանքի։ 1950 թվականին Բ. Կարախանյանը ցանկություն հայտնեց աշխատանքի գնալու տևականորեն ետ մնացող Քերրիի կոլտնտեսությունում։ Ընդամենը երկու տարի նա աշխատեց այդ կոլտնտեսությունում, և կոլտնտեսությունը դուրս բերեց ետ մնացողների շարքերից, դարձրեց շրջանի առաջավոր կոլտնտեսություններից մեկը։ 1952 թվականին Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը բրոշյուր հրատարակեց Քերրիի կոլտնտեսության լավագույն փորձի մասին։*

*Բնավորությամբ անհանգիստ, մշտապես աշխատանքի դժվարին տեղամասը ձգտող Կարախանյանը դիմեց պարտիայի շրջանային կոմիտե, խնդրելով իրեն աշխատանքի ուղարկել շրջանի խոշոր տնտեսություններից մեկում՝ Ղարիբջանյանում, որն այն ժամանակ ետ էր մնում։ Բավական է ասել, որ 1952 թվականին այդ կոլտնտեսությունում մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը կազմում էր ընդամենը 650 կիլոգրամ, ցածր էր հացահատիկի, շաքարի ճակնդեղի բերքատվությունը, խոշոր կորուստներ կային անասնապահական ֆերմաներում։*

*Լուրջ դժվարություններ էին ծառացել Ղարիբջանյանի կոլտնտեսության վարչության նախագահ Բ. Կարախանյանի առաջ։ Սակայն արդեն աշխատանքային որոշակի փորձ ունեցող կոմունիստը, պարտիական կազմակերպության աջակցությամբ, հաջողությամբ հաղթահարեց դրանք։ Ղարիբջանյանի կոլտնտեսությունը շուտով դարձավ շրջանի առաջավոր տնտեսություններից մեկը։ 1959 թվականին մեկ կովի կաթնատվությունը հասավ 2200 կիլոգրամի, հացահատիկի մեկ հեկտարի բերքատվությունը՝ 17,5 ցենտների, ճակնդեղինը՝ 500 ցենտների։*

*1959 թվականի սեպտեմբերի վերջերին կոմունիստ Բ. Կարախանյանը դիմումը ձեռքին մտավ ՀԿՊ Ախուրյանի շրջկոմի բյուրո։*

*Մուսայելյանի կոլտնտեսությունում վատ էին գործերը։ Լայն հնարավորությունների տեր այդ խոշոր կոլտնտեսությունը ետ էր պահում շրջանը։ Մեկ կովի կաթնատվությունը 1959 թվականի 8 ամիսներում կազմել էր ընդամենը 850 կիլոգրամ, կամ համարյա 300 կիլոգրամով շրջանի միջինից պակաս։ Չէր աճում անասնագլխաքանակը։ Պլանով նախատեսված 730 ցենտների փոխարեն, պետությանը վաճառված էր ընդամենը 148 ցենտներ միս, նախորդ տարվա համեմատությամբ համարյա կիսով չափ կրճատվել էր խոզերի գլխաքանակը, առաջ էին եկել լուրջ ֆինանսական դժվարություններ։*

*Բյուրոն բավարարեց Բ. Կարախանյանի խնդրանքը։ Նա հաջորդ օրն ընտրվեց Մուսայելյանի կոլտնտեսության վարչության նախագահ։ Ընդամենը մեկ տարի է անցել այդ օրվանից, բայց Մուսայելյանի կոլտնտեսության վերելքն արդեն ակնհայտ է։ Աշխատանքային դժվարությունների հաղթահարման այդ բուռն տարիներին Բ. Կարախանյանը ժամանակ գտավ և հեռակա կարգով ավարտեց Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտը։*

*Այսպիսին է կոմունիստը։ Նույնպիսի կրքոտությամբ ու անձնվիրությամբ ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում աշխատավորության առաջին շարքերում պայքարում են տասնյակ հազարավոր այլ կոմունիստներ։*

Սակայն, դժբախտաբար, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում դեռևս հանդիպում են առանձին մարդիկ, որոնք աշխատանքում և անձնական կյանքում չեն արդարացնում կոմունիստի վեհ կոչումը։ Որքան էլ քիչ լինի այդպիսի կոմունիստների թիվը, այնուամենայնիվ, դա չի կարող չանհանգստացնել պարտիական կազմակերպություններին։

Այժմ, երբ անհամեմատ բարձրացել է ժողովրդի կուլտուրական մակարդակը, երբ հասարակության բարոյական նորմաներն ամուր կերպով խարսխվել են կոմունիստական համակեցության սկզբունքների վրա, պարտիական կազմակերպություններին, բնականաբար, ավելի շատ են անհանգստացնում իրենց առանձին անդամների կողմից թույլ տրված սխալներն ու խախտումները, նրանք ավելի վճռականորեն են հանդես գալիս կոմունիստական բարոյականության պաշտպանության դիրքերում։

Վ. Ի. Լենինի բնորոշմամբ կոմունիստական բարոյականության հիմքում ընկած է կոմունիզմի ամրապնդման և ավարտման համար մղվող պայքարը։

Կոմունիստի վարքագծի նորմաները հակիրճ կերպով շարադրված են ՍՄԿՊ Կանոնադրության մեջ։ Ով ակտիվորեն չի մարտնչում կոմունիզմի կառուցման, պարտիական որոշումների կենսագործման համար, ով չի կատարում պարտիայի կանոնադրությամբ իր վրա դրված պարտականությունները, նա տեղ չունի պարտիայի շարքերում։

Կոմունիստը պարտավոր է մշտապես լինել աշխատանքի առաջամասում, առաջին հերթին այնտեղ, ուր վճռվում է արտադրության բախտը։ Պետք է խոստովանել, որ առանձին պարտիական կազմակերպություններ անտարբերությամբ են անցնում այնպիսի փաստերի կողքով, երբ որոշ կոմունիստներ անբարեխղճություն են հանդես բերում կանոնադրական այդ պարտականության կատարման գործում։ Կիրովականի շրջանի Ծաղկավան գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպության անդամներ Ա. Գրիգորյանը և Ե. Նավասարդյանը արդեն երկու տարի է, ինչ չեն մասնակցում կոլտնտեսային աշխատանքներին։ Կոլտնտեսությունում վատ են աշխատում նաև կոմունիստներ Վ. Նավոյանը, Լ. Դարբինյանը, Վ. Մարկոսյանը։ Աշտարակի շրջանի Օշական գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության անդամներ Ա. Ավետիսյանը, Ս. Դարբինյանը, Գ. Բաղդասարյանը նույնպես արտադրության մեջ չեն ապահովում իրենց ավանգարդային դերը։

Կոլտնտեսություններում պարտիական կազմակերպությունների առանձին անդամներ խուսափում են աշխատել արտադրության դժվարին տեղամասերում, մասնավորապես անասնաբուծության մեջ։ Օգտվելով սկզբնական պարտկազմակերպությունների ներողամտությունից, այդպիսի մարդիկ հանդես են բերում քաղքենիական տրամադրություններ, ձգտում են աշխատանքի անցնել համեմատաբար հանգիստ տեղամասերում։ Կարելի՞ է արդյոք նորմալ համարել այն, որ Շահումյանի շրջանի Շենգավիթ գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպության 38 անդամներից 14-ը ներգրավված չեն անմիջապես արտադրողական աշխատանքում։ Դրությունն ավելի վատ է Կիրովականի շրջանի Մեղրուտ գյուղում, որտեղ 46 կոմունիստներից արտադրության մեջ շարքային աշխատանք են կատարում միայն 7 հոգի։

Մեր մի շարք պարտիական կազմակերպություններ, պարտիայի որոշ քաղկոմ-շրջկոմներ անհրաժեշտ վճռականություն հանդես չեն բերում կարիե-



րիստական, մանրբուրժուական տրամադրությունների առանձին դրսևորումների դեմ մղվող պայքարում։

Եզակի չեն դեպքերը, երբ այս կամ այն պատճառով ինչ-որ պաշտոնից ազատված որոշ թվով կոմունիստներ հրաժարվում են աշխատել այնտեղ, ուր նրանց գործուղում է սկզբնական կազմակերպությունը կամ պարտիայի շրջանային կոմիտեն. նրանք համառորեն ձգտում են «համապատասխան» աշխատանքի։ Իրենց նպատակին հասնելու համար այդ կարգի մարդիկ սովորաբար դիմում են անազնիվ միջոցների, զբաղվում են դեմագոգիայով, շանտաժով, զրպարտությամբ և այլն։ Մի տարի առաջ Սելխոզսնաբի Կիրովականի գրասենյակի դիրեկտոր էր աշխատում պարտանդամ Խ. Բաղդասարյանը։ Անցյալ տարվա մայիսին նա ազատվեց աշխատանքից։ Պարտիայի շրջանային կոմիտեն նրան առաջարկեց մի քանի աշխատանք, որոնցից նա համառորեն հրաժարվում էր, պահանջելով «համապատասխան» աշխատանք։ Խ. Բաղդասարյանն առանց խղճի խայթ զգալու բազմաթիվ դիմումներ է ուղարկում վերադաս պարտիական կազմակերպություններին, բողոքելով շրջկոմի առանձին աշխատողների «անհոգի» վերաբերմունքի դեմ։ Այդ պատճառով, թե գլխացավանքից ազատվելու նկատառումներով, ՀԿՊ Կիրովականի շրջկոմի ընկերներն օրերս ընդառաջեցին Բաղդասարյանի ցանկությանը և նրան գործուղեցին «համապատասխան» աշխատանքի՝ նավթի բազայի դիրեկտոր։ Հասկանալի է, որ այդ աշխատանքից նա չհրաժարվեց։ Տվյալ դեպքում պարտիայի Կիրովականի շրջկոմի ավելորդ և վնասակար ներողամտությունը, իհարկե, չի կարող նպաստել կոմունիստների դաստիարակությանը, պարտիական կարգապահության ամրապնդմանը։

Պետք է նշել, որ իրենց պարտականությունների կատարման մեջ նման անբարեխիղճ կոմունիստների ոչ պարտիական վարքագծին նպաստում է անհրաժեշտ վճռականության բացակայությունը՝ աշխատանքային հարցերը լուծելիս։ Բանն այն է, որ առաջարկելով այս կամ այն աշխատանքը՝ մի շարք սկզբնական կազմակերպություններ, ինչպես նաև պարտիայի առանձին քաղկոմ-շրջկոմներ անհրաժեշտ պաշտոնականություն չեն տալիս դրան, համոզված լինելով առաջարկության իրավացիության մեջ, տեղի են տալիս զանազան սակարկումների, ամիսներով ձգձգում են հարցի լուծումը։

Կոմունիստն, ամենից առաջ, կոմունիստական շինարարության առաջամարտիկ է։ Կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար ծավալված համաժողովրդական պայքարում նա չի կարող առաջավոր չլինել։ Չլինել այդպիսին, նշանակում է անարժան լինել Կոմունիստական մեծ պարտիայի անդամի պատվավոր կոչմանը։ Այս և միայն այս տեսանկյունով պարտիական կազմակերպությունները պետք է վճռեն արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի ապահովման վերաբերյալ ՍՄԿՊ Կանոնադրության պահանջի կենսագործման հարցերը։ Ընդ որում հարկավոր է դատապարտել կարիերիզմի բոլոր կարգի դրսևորումները։

Պարտիայի անդամը պարտիական որոշումների կենսագործման ակտիվ մարտիկն է։ Նա պարտավոր է ոչ միայն ակտիվ մասնակցություն ունենալ հարցերի քննարկմանն ու վճռմանը, այլև ակտիվորեն մարտնչել ընդունված որոշումների կենսագործման համար։ Պարտիայի որոշումների նկատմամբ կոմունիստների պասիվ և ձևական մոտեցումը թուլացնում է պարտիայի մարտունակությունը և համատեղելի չէ նրա շարքերում գտնվելու հետ։ ՍՄԿՊ

Կանոնադրության այս պահանջը սկզբունքային նշանակություն ունի յուրաքանչյուր պարտիական կազմակերպության գործունեության, նրա կազմակերպվածության և մարտունակության ամրապնդման համար։ Փորձը ցույց է տվել, որ այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպության բոլոր անդամներն ակտիվ մասնակցություն են ունենում պարտիական կյանքի հարցերի քննարկմանն ու վճռմանը, ուր յուրաքանչյուր կոմունիստ, ո՛ր բնագավառում էլ նա աշխատելիս լինի, իրեն պատասխանատու է զգում պարտիայի դիրեկտիվների կենսագործման համար, այդպիսի տեղամասերում լուրջ հաջողություններ են ձեռք բերվում։

Վերջերս ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի բյուրոն լսեց Մարտունու շրջանի Վաղաշեն, Արտաշատի շրջանի Ն. Դվին գյուղերի կոլտնտեսությունների, Կոտայքի շրջանի կաթնաանասնապահական սովխոզի ղեկավարության, այդ թվում նաև պարտիական կազմակերպությունների քարտուղարների ինֆորմացիան՝ ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման վերաբերյալ։ Այդ տնտեսությունները լուրջ հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար ծավալված սոցիալիստական մրցությունում։ Վաղաշենի կոլտնտեսությունը 1960 թվականի առաջին կիսամյակի ընթացքում կաթի արտադրության գծով սոցիալիստական պարտավորությունը կատարել է 115, իսկ մսինը՝ 106 տոկոսով։ Ն. Դվինի կոլտնտեսությունն արդեն կատարել է մսի արտադրությունն ու վաճառքը նախորդ տարվա համեմատությամբ 3 անգամ ավելացնելու մասին ստանձնած սոցիալիստական պարտավորությունը։ Կոտայքի կաթնաանասնապահական սովխոզը նույնպես հաջողությամբ է լուծում իր առջև դրված լուրջ խնդիրները։ Ինչպես ցույց տվեց հարցի քննարկումը, այդ տնտեսությունների ձեռք բերած հաջողությունների հիմնական գրավականն այն է, որ բոլոր կոմունիստներն ակտիվ և գործարար մասնակցություն են ունենում ինչպես անմիջապես արտադրական, այնպես էլ պարտավորությունների կատարման համար ծավալված քաղաքական-կազմակերպական աշխատանքներին։

Կոմունիստների ակտիվության բարձրացման ուղղությամբ հետևողական աշխատանք է տանում Քանաքեռի ալյումինի գործարանի պարտիական կազմակերպությունը։ Այդ կազմակերպության 225 անդամներից 183-ը աշխատում են անմիջապես արտադրության մեջ, այդ թվում 82-ը հիմնական՝ էլեկտրոլիզի ցեխում։ Վերջին մի քանի տարիների ընթացքում գործարանը ռիթմիկ կերպով կատարում ու գերակատարում է արտադրական պլանները։ Կոլեկտիվի ձեռք բերած հաջողությունները հիմնականում արդյունք են պարտիական կազմակերպության, նրա բոլոր անդամների ստեղծագործ աշխատանքի։ 10 ցեխային կազմակերպություններում և 10 պարտիական խմբերում ընդգրկված կոմունիստները տոն են տալիս կոլեկտիվի գործունեությանը, որոշում և հետևողականորեն կենսագործում են ինչպես արտադրության, այնպես էլ բանվորների ու ինժեներա-տեխնիկական կադրերի ուսուցման, հանգստի, կենցաղի հետ կապված բոլոր ակտուալ հարցերը։ Գործարանում չկա մի կոմունիստ, որը չունենա պարտիական հանձնարարություն. պարտկազմակերպության բյուրոն կարողանում է հմուտ կերպով զուգակցել մշտական հանձնարարություններն առանձին կոնկրետ առաջադրանքների հետ։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ ոչ բոլոր պարտիական կազմակերպություններում է պատշաճ ուշադրություն հատկացվում կոմունիստների ակտի-



վության բարձրացման հարցերին։ Որոշ տեղերում պարտկազմակերպությունների քարտուղարները, բյուրոները, առանձին դեպքերում նաև պարտիայի շրջկոմներն ու քաղկոմներն անտարբերությամբ են անցնում այնպիսի փաստերի կողքով, երբ կոմունիստների մի մասը պասսիվ մասնակցություն է ունենում պարտիական կազմակերպության աշխատանքին։

Մի՞թե նորմալ է, օրինակ, որ Շահումյանի շրջանի Ենգիջա գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության անդամներ Կ. Հովհաննիսյանը, Ն. Պողոսյանը և Ն. Անտոնյանն արդեն երկու տարի է, ինչ չեն մասնակցում պարտիական ժողովներում դրված հարցերի քննարկմանը։ Չէ որ պարտիական կազմակերպությունն իր ժողովներում քննության է առնում կյանքի ու աշխատանքի այն հիմնական հարցերը, որոնք չեն կարող չվերաբերել և չհուզել բոլոր կոմունիստներին։ Վերոհիշյալ կոմունիստների պասսիվությունը լուրջ ահազանգ չի՞ արդյոք այն մասին, որ տվյալ կազմակերպությունում գործերի վիճակն անբավարար է։ Դժբախտաբար նման փաստեր կան նաև մի շարք այլ պարտիական կազմակերպություններում։ Կոմունիստը պարտիական որոշումների կենսագործման ակտիվ մարտիկն է, իսկ որոշումների կատարման կարևոր պայմաններից մեկն այն է, թե ինչպիսի մասնակցություն է ունեցել ինքը՝ կոմունիստը, այդ որոշումների ընդունմանը։

Վ. Ի. Լենինը նշել է, որ առանց քննարկման գիտակից բանվորները չեն որոշի ոչ մի կարևոր հարց։ Պարտիական կազմակերպությունը լիարյուն կյանքով կարող է ապրել միայն այն դեպքում, եթե բոլոր կոմունիստները հավասարապես իրենց պատասխանատու զգան կազմակերպության գործունեության համար։

Կոմունիստների ակտիվության բարձրացման նկատմամբ առանձին տեղերում գոյություն ունեցող անպատասխանատու վերաբերմունքը երբեմն հասցնում է նրան, որ կազմակերպության անդամների մի մասի մոտ աստիճանաբար թուլանում է հետաքրքրությունը պարտիական միջոցառումների նկատմամբ։ Բանը հասել է այնտեղ, որ նույն Շահումյանի շրջանի մի քանի պարտիական կազմակերպություններում կոմունիստներին պարտիական ժողովի են կանչում ցուցակով, որը նրանք նախօրոք ստորագրում են։ Պարտիական կյանքում նման աննորմալ երևույթը երկար ժամանակ չի արժանացել ՀԿՊ Շահումյանի շրջկոմի ուշադրությանը։ Ավելին, շրջկոմի ղեկավարները լուրջ նշանակություն չեն տվել կոմունիստների զգալի մասի չներկայանալու հետևանքով պարտիական ժողովների հետաձգման առանձին փաստերին։ Մի՞թե պարտիայի շրջկոմին խորապես չի անհանգստացրել, օրինակ, այն, որ Նորաշավլթի կոլտնտեսության պարտիական կազմակերպության սույն թվի մարտի 22-ին հրավիրված ժողովը, որը պետք է քննության առներ չափազանց կարևոր մի հարց, տեղի չունեցավ կոմունիստների մեծ մասի չներկայանալու պատճառով։ Անհրաժեշտություն կա՞ արդյոք նշելու, որ այդ ժողովում զեկուցող էր հաստատված ՀԿՊ շրջկոմի բյուրոյի անդամ, շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Թ. Կիրակոսյանը։

Գիտակցական, երկաթյա կարգապահությունը մեր պարտիայի անսասան ուժի կարևորագույն պայմաններից մեկն է։ Պարտիական կազմակերպությունները չեն կարող անտարբերությամբ անցնել կարգապահության խախտման փաստերի կողքով։ Անկախ այն բանից՝ մեծ է թե փոքր խախտումը, այն պետք է արժանանա պարտիական վերաբերմունքի։ Այդ հարցում թողտվության յու-

րաքանչյուր դրսևորում բացասաբար է անդրադառնում կոմունիստների դաստիարակության վրա, թուլացնում է կազմակերպության մարտունակությունը, նպաստում խորթ բարքերի արմատավորմանը:

ՍՄԿԿ Կանոնադրության մեջ ուղղակի նշված է, որ պարտիական և պետական կարգապահության խախտումը մեծ չարիք է, որը վնաս է հասցնում պարտիային և, հետևապես, համատեղելի չէ նրա շարքերում գտնվելու հետ:

Մեր պարտիական կազմակերպություններում միանգամայն իրավացի կերպով խստագույն պատժի են ենթարկվում այն կոմունիստները, ովքեր թույլ են տալիս պարտիական կամ պետական կարգապահության այնպիսի խախտումներ, որոնք նյութական ու բարոյական լուրջ վնաս են հասցնում հասարակությանը: Սակայն դրա հետ միասին շատ տեղերում նշանակություն չի տրվում առօրյա, առաջին հայացքից աննշան ու «անվնաս» թվացող խախտումներին և այդ այն դեպքում, երբ այդպիսի խախտումներ որոշ կազմակերպություններում հաճախակի են: Առանձին տեղերում հաճախակի են դարձել սկզբնական կազմակերպությունների որոշումներին չենթարկվելու, պարտիական հանձնարարությունները չկատարելու փաստերը:

Պարտիական կարգապահության ամրապնդման ուղղությամբ տարվող դաստիարակչական աշխատանքը լոկ բարոյախոսական բնույթ չպետք է կրի: Կարգապահությունը խախտող կոմունիստի նկատմամբ անհրաժեշտ է կիրառել պարտիական ներգործության բոլոր միջոցները, քննության առարկա դարձնել յուրաքանչյուր փաստ:

Պարտիայի անդամին խորապես պետք է անհանգստացնի աշխատանքում տեղ գտած յուրաքանչյուր թերություն: Նա պարտավոր է քննադատորեն վերաբերվել իր և կոլեկտիվի գործունեությանը և համարձակորեն դնել թերությունների վերացման, սխալների շտկման հարցերը: Կոմունիստն իրավունք չունի հարմարվելու գործերի անբավարար վիճակին:

Անհրաժեշտ է նշել, որ ՍՄԿԿ XX համագումարից հետո պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնման շնորհիվ պարտիական կազմակերպություններում զգալիորեն աշխուժացել են քննադատությունն ու ինքնաքննադատությունը, բարձրացել է կոմունիստների պատասխանատվությունը ինչպես կազմակերպության, այնպես էլ կոլեկտիվի գործունեության համար: Իսկ դա շատ կարևոր է, որովհետև անկեղծ, բոլշևիկյան քննադատությունը լուրջ մտահոգության, ապրումների ծնունդ պետք է լինի, թերությունները պետք է խորապես հուզեն, անհանգստացնեն կոմունիստին: Հասկանալի է, որ այդ կլինի այն դեպքում, եթե պարտիայի անդամը կամ անդամության թեկնածուն իրեն պատասխանատու զգա գործերի վիճակի համար, ապրի կոլեկտիվի հաջողություններով ու հոգսերով:

Պարտիական կազմակերպությունները, պարտիայի քաղկոմ-շրջկոմները պարտավոր են անհրաժեշտ պայմաններ ստեղծել քննադատության լայն ծավալման համար, պատժել նրանց, ովքեր կփորձեն կասեցնել կամ ճնշել քննադատությունը: Մեր առանձին կազմակերպություններում վերջին շրջանում նկատվել են քննադատող կոմունիստների նկատմամբ սխալ, ոչ պարտիական վերաբերմունքի փաստեր: Հիմնարկությունների, ձեռնարկությունների, տնտեսությունների մի քանի մեծամտացած ղեկավարներ տարվելով փառամոլությամբ՝ արհեստական դժվարություններ են ստեղծում այն ենթակա աշխատողների համար, ովքեր քննադատել են նրանց, օգտագործում են յուրա-



քանչյուր պատեհ ու անպատեհ առիթ՝ վրեժխնդիր լինելու: Այսպես, օրինակ, Երևանի Քաղվառելիքի կադրերի գծով նախկին ավագ տեսուչ ընկ. Թորոսյանը թղթակցություն է ուղարկում Մոսկվա, «Սովետսկայա տորգովլյա» թերթին, որի մեջ քննադատության է ենթարկում Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրությանը՝ վարչական ու սպասարկող անձնակազմի ուռճացած հաստիքների կրճատման ուղղությամբ անբավարար աշխատանք տանելու համար: Այդ թղթակցությունն ուղարկվում է Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրի տնօրինությանը: Հետևանքը լինում է այն, որ դրանից մի քանի օր անց «կրճատվում է» ընկեր Թորոսյանի հաստիքը:

Պարտիական կազմակերպություններն իրավունք ունեն և պարտավոր են ակտիվորեն միջամտելու կոմունիստի «անձնական» կյանքի հարցերին, եթե նրա կողմից թույլ են տրվում արարքներ, որոնք համատեղելի չեն կոմունիստական բարոյականության նորմերի հետ և արատավորում են կոմունիստի բարձր կոչումը:

Գաղտնիք չէ, որ մեր առանձին պարտիական կազմակերպություններում դեռևս կան մարդիկ, որոնք իրենց վարքագծով վնասում են պարտիայի հեղինակությանը: Մասնավոր սեփականատիրական, գռփողական տենդենցները, կարիերիստական տրամադրությունները, հարբեցողությունը, անբարոյականությունը, անազնվությունը երբեմն իրենց զգացնել են տալիս առանձին հետամնաց, պատահականորեն պարտիայի շարքերը սպրդած մարդկանց մոտ:

Երևանի երկաթուղային կայարանի վագոնային տնտեսության պարտկազմակերպության անդամ Գ. Նիկողոսյանի հաշվառման քարտում գրանցված է երեք պարտիական տույժ. 1954 թվականին՝ հարբեցողության, 1955 թվականին՝ կառամատույցային տոմսակների վերավաճառման, 1958 թվականին՝ առանց տոմսի ուղևորներ փոխադրելու համար: Տույժերի լոկ թվարկումն անգամ ասում է այն մասին, որ Նիկողոսյանն իր էությամբ, տրամադրություններով, ձգտումներով ոչինչ ընդհանուր չունի պարտիայի անդամի կոչման հետ: Լրջորեն մտահոգե՞լ է արդյոք Նիկողոսյանի վարքագիծը պարտկազմակերպության անդամներին, բյուրոյին, ՀԿԿ Երևանի կազմակերպության Լենինյան շրջկոմին. համոզվա՞ծ են արդյոք նրանք այն բանում, որ երեք տույժերի առկայությունը դարձի կբերի «մոլորված» ընկերոջը:

Կոմունիստական բարոյականության նորմերի այս և այլ կարգի խախտումները պետք է լրջորեն մտահոգեն պարտիական կազմակերպություններին: Անհրաժեշտ է ուժեղացնել կոմունիստների դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքը, օգնել այս կամ այն զանցանքը կամ սխալը թույլ տված կոմունիստին՝ ժամանակին զգալու և ուղղելու այն: Կոմունիստների պարտիականության հարցերը լուծելիս անհրաժեշտ է հմտորեն զուգակցել ընկերական հոգատարությունը պարտիայի շահերը զանազան կարգի պատահական մարդկանց ոտնձգություններից պաշտպանելու վճռականության հետ:

---

# ՏԵԽՆԻԿՈՒՄՆԵՐԻ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐԸ

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ, Ժ. ԹՈՓՉՅԱՆ

Ամեն տարի ժողովրդական տնտեսության, գիտության, կուլտուրայի տարբեր բնագավառներն աշխատանքի են անցնում բուհերն ավարտած տասնյակ հազարավոր երիտասարդ մասնագետներ՝ ինժեներներ, բժիշկներ, գյուղատնտեսներ, ուսուցիչներ։

Սակայն բարձրագույն կրթությամբ որակյալ մասնագետների պատրաստման զուգահեռ երկրի ժողովրդական տնտեսության համար պակաս նշանակություն չունի միջին որակի կադրերի պատրաստումը։ Գործարաններում, ֆաբրիկաներում խիստ մեծ է միջին որակի մասնագետների՝ տեխնիկների, վարպետների, կոլտնտեսություններում ու սովխոզներում՝ մեխանիզատորների, ագրոտեխնիկների, առողջապահության բնագավառում՝ բժշկական քույրերի աշխատանքը։ Միջին որակի մասնագետներ պատրաստելու նպատակով Երևան քաղաքում այժմ գործում են 20 տեխնիկումներ և ուսումնարաններ, որտեղ սովորում են մոտ տասը հազար ուսանողներ։

Ժողովրդական տնտեսության պահանջներից ելնելով՝ տարեցտարի փոփոխվում է առանձին տեխնիկումների պրոֆիլը։ Միայն Շինարարական տեխնիկումում վերջին երկու տարվա ընթացքում ավելացել է 4 նոր մասնագիտություն։ Նոր բաժիններ ու ցիկլեր են կազմակերպվել Հաստոցագործիքաշինական, Թեթև և սննդի արդյունաբերության տեխնիկումներում, Բժշկական ուսումնարանում և այլ տեխնիկումներում։

Մասնագետների պատրաստման գործը պատասխանատու և պատվավոր խնդիր է։ Ուսանողների դաստիարակման ամենակարևոր հարցն այժմ ուսուցման և աշխատանքի կապն է։ Միայն աշխատանքի մեջ, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում կարող է ամրապնդվել մարդու աշխարհայացքը, նրա բարոյական կերպարը։ Տեխնիկումներում ուսումնա-դաստիարակչական գործի վրա միանգամայն բարենպաստ ազդեցություն է գործել ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից ընդունված «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և ՍՍՌՄ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» օրենքը. նկատելի է դարձել ուսումնական աշխատանքի մակարդակի և ուսման առաջադիմության բարձրացումը։ Տեխնիկումներում հեռակա ուսուցման գծով սովորող 2320 ուսանողներն արտադրության աշխատողներ են։ Նույն կարգով հանրօգուտ աշխատանքով են զբաղված երեկոյան բաժիններում սովորող 1750 ուսանողներ։ Երևանի Շինարարական տեխնիկումի ուսանողները հիմնականում աշխատում են քաղաքի արդյունաբերական և շինարարական օբյեկտներում։ Տեխնիկումների գազային ցանցի տնտեսության մասնագիտությամբ սովորողները արտադրական ուսուցման մի մասը անց են կացնում Կիևում և Խարկովում։

Թեթև արդյունաբերության, էլեկտրատեխնիկական տեխնիկումների ուսանողները արտադրական ուսուցման մեծ մասը անց են կացնում արտադրության մեջ։ Նույն կարգով Գյուղատնտեսական տեխնիկումի ուսանողներն իրենց արտադրական աշխատանքն անց են կացնում Էջմիածնի, Կոտայքի, Արտաշատի և ռեսպուբլիկայի այլ շրջաններում։ Այստեղ ուսանողները անմիջապես աշխատում են արտադրության մեջ, մասնակցում հողի մշակման, գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման, բերքահավաքի և այլ աշխատանքների։ Սակայն մի շարք տեխնիկումների (ադրբեջանական Գյուղատնտեսական, Քիմիկո-տեխնոլոգիական) բարձր կուրսերում առանձին առարկաների դասավանդումը և գործնական պարապմունքներն ընթանում են հին ձևով, հին ծրագրերով։ Ադրբեջանական Գյուղատնտեսական տեխնիկումում ուսումնական ծրագրերով նախատեսված գործնական պարապմունքներ գրեթե չեն անցկացվում։ Գյուղմեքենայացման տեխնիկումում (որը միայն այս տարի ստացել է 200 հազար ռուբլու գյուղատնտեսական գործիքներ) գործիքների և եղած մեքենաների խնամքը վատ է, իսկ օգտագործումը՝ անբավարար։

Արտադրական ուսուցման կազմակերպման գործում խիստ կարևոր է ուսանողներին ցույց տրվող ղեկավարությունը։ Նպատակահարմար է արտադրության մեջ աշխատողներից ղեկավարներ ընտրելը։ Տեղերում փորձված վարպետները, կոլտնտեսությունների որակյալ մասնագետներն իրենց մասնագիտությունը սիրով են սովորեցնում երիտասարդներին։ Կարևոր նշանակություն ունի արտադրական ուսուցման կազմակերպումը առաջավոր գործարաններում, ֆաբրիկաներում կամ կոլտնտեսություններում, որտեղ ավելի շատ է արմատավորված նոր տեխնիկան, գործը տարվում է աշխատանքի առաջավոր մեթոդներով. այստեղ ուսանողները ձեռք են բերում պրակտիկ հարցերի լուծման փորձ, ստեղծագործական մոտեցման, դժվարությունները հաղթահարելու ունակություն։ Այդ պայմաններում ավելի է կոփվում նրանց բնավորությունը։ Ուսանողը չպետք է խորշի ֆիզիկական աշխատանքից և կատարի այն ամենը, ինչ նպաստում է նրա մասնագիտական գիտելիքների բարձրացմանը։ Սակայն ունենք առանձին դասատուներ, որոնք օրերով ուսանողներին թողնում են մենակ, չեն ղեկավարում արտադրական պրակտիկան։ Նման երևույթներ նկատվել են Հաստոցագործիքաշինական, Գյուղմեքենայացման տեխնիկումներում։

Ուսանողության դաստիարակության հիմնական միջոցը դասի բուն պրոցեսն է. բովանդակալից դասն ամենամեծ դաստիարակությունն է. երբ ուսանողները չեն ստանում անհրաժեշտ գիտելիքներ կամ դասն անցնում է ցածր մակարդակով, ապա այստեղ խոսք չի կարող լինել դաստիարակության մասին։ Հաստոցագործիքաշինական տեխնիկումի մետաղների տեխնոլոգիայի դասատու Ս. Հաջոյանը դասավանդում է 5 առարկա, սակայն դրանցից և ոչ մեկը չի վարում այնպիսի մակարդակով, որ ուսանողները ստանան համապատասխան գիտելիքներ։ Անհետաքրքիր են անցնում ադրբեջանական Գյուղատնտեսական տեխնիկումի պատմության ուսուցիչ Հասանովի դասերը։

Դասը պետք է հագեցված լինի ճշգրիտ գիտելիքներով, նյութը շարադրվի պարզ ու մատչելի լեզվով։ Այս առումով էլ պետք է տեխնիկումներում անհրաժեշտ ուշադրություն հատկացվի մանկավարժական-մեթոդական աշխատանքներին։

Մանկավարժական աշխատանքի մակարդակի բարձրացումը ոչ միայն նպաստում է դասատուների որակի և մանկավարժական հմտության բարձրացմանը, այլև դրական ազդեցություն է թողնում ուսանողության դաստիարակության վրա։ Էլեկտրատեխնիկական, Հաստոցաշինական և Առևտրատնտեսագիտական տեխնիկումներում ուսումնական մասի վարիչներ՝ Ա. Ղազարյանը, Հ. Առաքելյանը, Ս. Ազատյանը անհրաժեշտ չափով չեն խորանում ուսումնական պրոցեսի մեջ, հարկ եղած օգնությունը ցույց չեն տալիս վերջին տարիներին արտադրությունից դասատուական աշխատանքի եկած ընկերներին, որոնք չունեն մանկավարժական աշխատանքի պահանջված փորձ։ Մասնագետ մանկավարժներին օգնելու գործում մեծ անելիքներ ունեն առարկայական հանձնաժողովները, մանկավարժական կոլեկտիվը։ Տեխնիկումների պարտիական կազմակերպությունները պետք է խորանան մանկավարժական աշխատանքի մեջ, զբաղվեն դասատուների մասնագիտական և ընդհանուր մակարդակի բարձրացման հարցերով։ ՍՄԿՊ Կենտկոմի 1960 թվականի հունվարի՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշման մեջ ասված է. «Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ սովորողները և ուսանողներն ուսումնական առարկաների յուրացման պրոցեսում տիրապետեն մատերիալիստական աշխարհայացքին, կոմունիստական գաղափարախոսությանը, սովորեն հասկանալ պարտիայի քաղաքականությունը և պայքարեն դրա կենսագործման համար»։

Սակայն առանձին տեխնիկումների պարտկազմակերպություններ (Կոոպերատիվ, Առևտրա-տնտեսագիտական, Քիմիկո-տեխնոլոգիական և այլն) ուսանողության շրջանում քաղաքական-դաստիարակչական բավարար աշխատանք չեն տանում։ Այս տեսակետից չափազանց կարևոր է ուսուցիչների անձնական մասնակցությունը քաղաքական դաստիարակչական, հատկապես, ագիտացիոն աշխատանքին։ Ագիտատոր դասատուներից շատերը՝ Ե. Սարգսյանը (Թեթև արդյունաբերության տեխնիկում), Վ. Սարգսյանը (Էլեկտրատեխնիկ տեխնիկում) խմբում կամ կուրսում տարվող ագիտացիայից բացի մասնակցում են ուսանողական ժողովներին, երեկոներին և շատ հաճախ իրենք են ղեկավարում այդ միջոցառումները։

Քաղաքական դաստիարակության կարևոր միջոց է դասախոսությունների կազմակերպումը և, հատկապես, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի նյութերի պրոպագանդումը։ Սակայն տեխնիկումների առանձին դասախոսներ այդ նյութերը պրոպագանդում են ցածր մակարդակով։

Ուսանողության դաստիարակության գործում խոշոր տեղ ունեն ինտերնացիոնալ տրադիցիաների պահպանումն ու զարգացումը։ Այդ նպատակով մի շարք տեխնիկումներում արժանավայել կերպով նշվեց եղբայրական Ադրբեջանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյա հոբելյանը։

Երիտասարդության դաստիարակման գործն ավելի հաջող է կազմակերպվում Թեթև արդյունաբերության տեխնիկումում։ Այստեղ կազմակերպված բարեկամության սենյակում ուսանելի շատ բան կա։ Առանձին կոլեկտիվներում կազմակերպվում է դելեգացիաների փոխանակում։ Եղբայրական ռեսպուբլիկաների համանման տեխնիկումների ուսանողների միջև հաստատվել են նամակագրական կապեր, կատարվում է փորձի փոխանակում և այլն։



Շատ կարևոր է ուսանողների էսթետիկական դաստիարակությունը։ Տեխնիկումներում հաճախ են կազմակերպվում հանդիպումներ արվեստի և գրականության առաջավոր մարդկանց հետ։ Ուսանողները լսում են նրանց դասախոսությունները, ելույթները։ Քիչ չեն դեպքերը, երբ նրանք հանդիպումներ են ունենում կինոյի, թատրոնի, օպերայի սիրած լավագույն արտիստների հետ։ Այդ հանդիպումներն ու զրույցները, դիտած կինոյի և ներկայացման քննարկումներն անջնջելի և խոր տպավորություն են թողնում երիտասարդի վրա, զարգացնում են նրա էսթետիկական ճաշակը։

Դասերից դուրս թանգարաններ, պատկերասրահ, տեսարժան վայրեր կոլեկտիվ հաճախումները կամ հանգստի երեկոների կազմակերպումը նույնպես օգտակար են։ Մեր երիտասարդությունը պետք է տեսնի այն լավն ու արժանավորը, ինչ ստեղծել է նախորդ սերունդը, այն գեղեցիկն ու օրինակելին, ինչ ստեղծվում է այսօր։ Սակայն կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները վերոհիշյալ միջոցառումները կատարում են շատ սակավ, անկազմակերպ։ Գյուղմեքենայացման, Հաստոցադազգահաշինական և մյուս տեխնիկումներում քիչ չէ այն երիտասարդների թիվը, որոնք դեռ չեն եղել օպերայում, չեն լսել Հայֆիլհարմոնիայի համերգները, չեն դիտել մայրաքաղաքի թանգարանները կամ պատկերասրահները։ Այս իրադրությունը պետք է անհանգստացնի պարտկազմակերպություններին։

Արվեստի միջոցով ուսանողության դաստիարակության ձևերից է գեղարվեստական ինքնագործունեությունը։ Մեզ մոտ շնորհալի երիտասարդները շատ են։ Նրանք մասնակցում են ինքնագործ խմբակներին։ Շատ տեղերում կազմակերպվում են ցիկլային, տեխնիկումային ֆեստիվալներ։ Սակայն, որպես ընդհանուր երևույթ, ինքնագործ խմբակները միայն դեպքից դեպք են ելույթ ունենում, նրանց կազմը սահմանափակ է, չեն կազմակերպվում նրանց ելույթները գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում։ Նույն կոլեկտիվի առաջ մի քանի անգամ ելույթներ ունենալը ձանձրացնում է խմբակի անդամներին։

Երիտասարդների ինքնագործունեությունը պետք է կազմակերպել նաև պատի թերթի լույսընծայման, ֆոտոցուցահանդեսների կազմակերպման միջոցով։ Սակայն մեր բոլոր տեխնիկումների պատի թերթերը կրում են հնության կնիքը, գրվում են միևնույն մարդկանց կողմից։

Երիտասարդության ճիշտ զարգացման համար որոշակի նշանակություն ունի ֆիզիկական դաստիարակությունը։ Մեր տեխնիկումների ուսանողներից շատերը պարապում են սպորտ սեկցիաներում։ Սակայն տեխնիկումների պարտիական և ԼԿԵՄ կազմակերպություններն ամենօրյա հոգատարություն չեն ցուցաբերում երիտասարդության ֆիզիկական դաստիարակության նկատմամբ։ Սպորտի զանազան սեկցիաներում երիտասարդությանը մարզելուց բացի պետք է կազմակերպել միջկուրսային, միջտեխնիկումային մրցումներ, որոնք կնպաստեն նրանց ֆիզիկական կոփվածությանը։ Անհրաժեշտ է վերացնել ֆիզկուլտուրայի սեզոնայնությունը և օգտագործել ձմռան հնարավորությունները՝ երիտասարդությանը ֆիզիկապես կոփելու համար։

Եթե պարտիական և հասարակական կազմակերպությունները, մանկավարժական կոլեկտիվները ուսանողների շրջանում որոշակի գործ են կատարում ուսուցման ընթացքում, ապա նրանց աշխատանքը խիստ անբավարար է դասերից դուրս, հանրակացարաններում, ճաշարանում և այլուր։

Որոշ տեղերում (Թեթև արդյունաբերության, Քիմիկո-տեխնոլոգիական տեխնիկումներ) ինքնասպասարկման անցնելով՝ դրությունը բարելավվել է։ Եվ, ընդհակառակն, Գյուղմեքենայացման, ադրբեջանական Գյուղատնտեսական և այլ տեխնիկումների հանրակացարաններում անբավարար է սանիտարական վիճակը։ Հանրակացարաններում դեռևս անհրաժեշտ կահավորում չկա, չի գործում կարմիր անկյունը, շատ սենյակներում չկան բարձրախոսներ, աթոռներ։ Հանրակացարանները հաճախ մուտք են գործում մարդիկ, որոնք խանգարում են ուսանողության հանգիստը։

Ավելի վատթար է վիճակը այդ տեխնիկումների ուսումնական շենքերի շրջապատում։ Պարտիական և ԼԿԵՄ կազմակերպությունները չեն օգտագործում ուսանողների ուժերը տեխնիկումների շրջապատը մաքրելու, կանաչապատելու և ֆիզկուլտ հարմարություններ ստեղծելու համար։ Այս թերությունների նկատմամբ անտարբեր են պարտկազմակերպությունները և դասատուները։ Նրանք վերջերս չեն լինում հանրակացարաններում, չեն զրուցում ուսանողության հետ։ Չպետք է մոռանալ, որ ուսանողները դասատուներին սիրում են ոչ միայն լավ դասի, այլև հոգատարության, լավ հատկությունների համար։ Սիրելի դասատուի անբասիր կերպարը, նրա զրույցներն ու հանդիպումները ուսանողության վրա թողնում են անջնջելի տպավորություն։

Լինելով օրինակելի մանկավարժ, դասատուն չպետք է իջնի ուսանողի մակարդակին։ Մինչդեռ Հաստոցագործիքաշինական տեխնիկումում շատ դասատուների և ուսանողների միջև անհրաժեշտ սահմանը ջնջվել է։ Նույնիսկ որոշ ուսանողներ սպառնանքով հարկադրում են իրենց դասատուներին լավ գնահատական նշանակել։ Այստեղ պարտկազմակերպությունը և նրա քարտուղար Հ. Պետրոսյանը անտարբեր վերաբերմունք են ցուցաբերում այս աղաղակող թերությունների նկատմամբ։ Տեխնիկումի դիրեկտոր Ռ. Սիմոնյանը և ուսմասվար Հ. Առաքելյանը անճարակություն հանդես բերեցին ուսումնա-դաստիարակչական աշխատանքի կազմակերպման, ուսանողության դաստիարակության և մանկավարժական կոլեկտիվին գլխավորելու ուղղությամբ։

Ուսանողության մեջ դեռևս շարունակում են տեղ գտնել հակահասարակական երևույթներ, ուսման նկատմամբ անբարեխիղճ վերաբերմունքի փաստեր։ Այդ, հատկապես, նկատվում է Հաստոցագործիքաշինական, Էլեկտրատեխնիկական, Գյուղմեքենայացման տեխնիկումներում, որտեղ մանկավարժական կոլեկտիվները վատ են զբաղվում դաստիարակության հարցերով։ Ուսանողության հակահասարակական երևույթների փաստեր կան նաև Շինարարական, Գյուղատնտեսական, Կոոպերատիվ տեխնիկումներում, Բժշկական և Գեղարվեստական ուսումնարաններում. այդ պետք է անհանգստացնի պարտկազմակերպություններին ու մանկավարժական կոլեկտիվներին։

Տեխնիկումների ուսանողության դաստիարակությունը պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է և այն պահանջում է ամենօրյա հետևողական աշխատանք։

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ

Լ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Ուսուցման կապը արտադրական աշխատանքի հետ տեխնիկական բարձրագույն ուսումնական հաստատություններում չափազանց կարևոր գործ է։ Այս առումով կարելի է խոսել Երևանի պոլիտեխնիկ ինստիտուտում 1959/60 ուսումնական տարում կատարած աշխատանքների մասին։ Առաջին կուրսն ընդունված բոլոր ուսանողները ցերեկները աշխատում են արտադրության կամ շինարարության մեջ, իսկ երեկոները սովորում են ինստիտուտում։ Հաշվի առնելով, որ ուսանողն իր ժամանակի մեծ մասն անցկացնում է աշխատանքի վայրում, նրա ուսումնական ծանրաբեռնվածությունը զգալիորեն թեթևացած է, դասերը տեղի են ունենում 4 օր, 4-ական ակադեմիական ժամերով, այսինքն՝ շաբաթական միայն 16 ժամ, նախկին ուսումնական ծրագրերում եղած 36 ժամի փոխարեն։ Ըստ որում ուսանողները պետք է I և II կուրսերում աշխատեն և միաժամանակ սովորեն մեկ տարի 4 ամիս և հետո նորից 6 ամիս սովորեն բարձր կուրսերում, արդեն կրտսեր տեխնիկական աշխատողի պաշտոնում։

Ուսումնական տարվա սկզբից աշխատանքային տեղեր առանձնացվեցին ինստիտուտի առաջին կուրսեցիների համար. ցերեկային բաժնում սովորող բոլոր ուսանողներն աշխատանքի տեղավորվեցին Երևանի և Լենինականի առաջավոր ձեռնարկությունների, Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության շինարարական տրեստներում, Երևանի քաղաքային Սովետի արտադրական օբյեկտներում և Երևանի հիդրոէլեկտրակայանի շինարարությունում։ Այս տեղերը համապատասխանում էին ուսանող բանվորների կողմից ինստիտուտում սովորելու համար ընտրած մասնագիտություններին։

Պետք է ասել, որ աշխատանքը և ուսուցումը հաջող կազմակերպելու համար սկզբից ևեթ անհրաժեշտ եղավ հաղթահարել լուրջ դժվարություններ։ Որոշ տնտեսական ձեռնարկությունների ղեկավարներ, չհասկանալով կադրերի պատրաստման ուղղությամբ ձեռնարկված միջոցառումների համաժողովրդական նշանակությունը, այս կամ այն կերպ դիմադրում էին իրենց մոտ ուսանող-բանվորներ տեղավորելու պահանջին, չէին կարգավորում աշխատանքային հերթափոխությունները։ Իսկ մյուս կողմից, որոշ ուսանողներ, վախենալով արտադրական աշխատանքի դժվարություններից, ձգտում էին խուսափել աշխատանքից, թույլ էին տալիս կարգապահության խախտման դեպքեր, առանձին դեպքերում էլ օգտվելով ցեխերի պետերի, վարպետների, աշխղեկների թույլ պահանջկոտությունից, ուղղակի չէին ներկայանում աշխատանքի։

Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում աշխատող

են ինստիտուտի էլեկտրատեխնիկական ֆակուլտետի «էլեկտրական մեքենաներ և սարքեր» և «արդյունաբերական ձեռնարկությունների էլեկտրիֆիկացիա» մասնագիտությունների 59 ուսանողներ. նրանք տեղավորված են գործարանի տարբեր ցեխերում և կցված են լավագույն վարպետներին։ Ուսանողները 1959 թ. դեկտեմբերին հանձնեցին տեխմինիմումը և ստացան բանվորական կարգ, որից հետո նրանց ինքնուրույն հանձնարարություն տրվեց։

«Արդյունաբերական ձեռնարկությունների էլեկտրիֆիկացման» մասնագիտության թվով 22 ուսանողներ աշխատում են Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում։ Ուսանողների աշխատանքը լավ է կազմակերպված նաև Մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտա-հետազոտական ինստիտուտում։

Ինստիտուտի մեխանիկական ֆակուլտետի ուսանողներից 23 հոգի աշխատում են Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ձուլման և կռման ցեխերում։ Ձուլման ցեխի պետ Աղամալյանի ղեկավարությամբ ուսանողները ոչ միայն աշխատում, այլև խորանում են ձուլման տեխնոլոգիայի հմտության մեջ։ Մեխանիկական ֆակուլտետի 11 ուսանողներ աշխատում են ավտոպահեստամասերի գործարանի մեխանիկական ցեխերում, ավտոպահեստամասերի մշակման վրա։ Քիմիկո-տեխնոլոգիական ֆակուլտետի ուսանողները աշխատում են Կիրովի անվան և էլեկտրալամպերի գործարաններում։

Առաջին կուրսեցիների արտադրական ուսուցումը յուրահատուկ դժվարություններ առաջ բերեց շինարարական ֆակուլտետի մասնագիտությունների գծով։ Շինարարական կազմակերպությունների ղեկավարները և աշխղեկները հենց սկզբից ուսանողների վրա նայում էին լոկ իբրև իրենց մոտ ուղարկված լրացուցիչ բանվորական ուժի, դժվարություններ էին ստեղծում ուսանողների մասնագիտական ուսուցման, կոմպլեքսային բրիգադաների մեջ նրանց ընդգրկելու հարցերում, ժամանակին չէին լուծում ուսանողների աշխատավարձի, նրանց բանվորական արտահագուստով ապահովելու և այլ հարցեր։ Անհրաժեշտ եղան մի շարք կոնկրետ միջոցառումներ, այդ թվում նաև ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի միջամտությունը, որպեսզի այդ ընկերները բարձրագույն ուսուցման գործում իրենց նույնպես պատասխանատու զգային։ Այժմ այստեղ շատ հարցեր լուծվում են և ուսանողների արտադրական ուսուցման բնագավառում զգալի հաջողություններ են ձեռք բերված։

Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության Ֆունդամենտշին տրեստում է աշխատում շինարարական ֆակուլտետի (ճանապարհային մասնագիտության) ուսանողների մի խումբ, որը բավականին գործ է կատարել «Կարմիր բլուր» երկաթուղային նոր կայարանի և գծի շինարարության վրա։ Հիդրոտեխնիկական մասնագիտության ուսանողներն աշխատում են Երգէսի շինարարության վրա, իսկ ջերմագազամատակարարման մասնագիտության ուսանողները՝ Շինարարության մինիստրության 8-րդ շինմոնտաժային տրեստում։ Շինարարական ֆակուլտետի մեծ թվով ուսանողներ աշխատում են մի շարք բնակելի շենքերի, ինչպես նաև ինստիտուտի գիտա-հետազոտական աշխատանքների համար կառուցվող կորպուսի շինարարության վրա։ Ուսանողներից շատերն արդեն ստացել են բանվորական մասնագիտացում, աշխատում են շինարարական մեքենաների վրա որպես որմնադիրներ, քարտաշներ և այլն։

Անցած ուսումնական տարվա փորձը ցույց է տալիս, որ ուսուցման նոր ձևը հսկայական առավելություններ ունի։ Աստիճանաբար հաղթահարելով դժվարությունները, ձեռք բերելով ուսումն ու աշխատանքը հմուտ կերպով



զուգակցելու, ժամանակը ռացիոնալ օգտագործելու ունակություն, ուսանողները փոխում են իրենց վերաբերմունքն ուսման և աշխատանքի նկատմամբ, գիտակցաբար և ավելի կազմակերպված են մոտենում գործին։ Նրանք սկսում են առանձնահատուկ ուշադրությամբ վերաբերվել արտադրական հարցերին, ձգտում են խորանալ արտադրական պրոցեսի մեջ, մեծ հետաքրքրություն են ցուցաբերում դեպի տեխնիկական գրականությունը, առաջարկում են վերափոխել ուսման պրոցեսի առանձին կողմեր, կատարելագործել այս կամ այն արտադրական պրոցեսը և այլն։

Իսկ ինչպե՞ս է առաջին կուրսեցիների ուսման գործը։ Պետք է ասել, որ այս հարցը շատ էր հուզում ինստիտուտի պրոֆեսորա-դասախոսական կազմին, շատերը մտահոգվում էին թե արդյոք միջնակարգ դպրոցը նոր ավարտած պատանիներն ու աղջիկները կկարողանա՞ն հաղթահարել անսովոր ծանրաբեռնվածությունը։ Արդյունքները ցույց տվին, որ թերահավատության ոչ մի հիմք չկա, և կարելի է հաջողությամբ աշխատել ու սովորել։ Առաջին կուրսեցիները հիմնականում լուրջ վերաբերմունք ցույց տվին ուսման նկատմամբ։ Ուսումնական առաջադիմությունն առաջին կուրսերում նախորդ տարվանից ավելի բարձր էր։ Որպես ընդհանուր երևույթ պետք է ասել, որ լավ սովորում են այն ուսանողները, որոնք բարեխիղճ են աշխատում պրակտիկայում։

Իհարկե, սովորելը և միաժամանակ աշխատելը շատ ավելի դժվար է, քան միայն սովորելը։ Այստեղ է, որ ինստիտուտի մանկավարժական կոլեկտիվը, պարտիական և կոմերիտական կազմակերպություններն արտադրական կազմակերպությունների հետ միասին պետք է մշտապես օգնեն ուսանող բանվորին՝ իր մեջ կոփելու ուժ, աշխատասիրություն ու դժվարություններ հաղթահարելու ունակություն։

Առաջին կուրսեցիների ուսումն ու աշխատանքը բարձր մակարդակով անցկացնելու համար կարևոր նշանակություն ունի նաև ուսման պրոցեսի ճիշտ պլանավորումն ու կազմակերպումը։ Այս ուղղությամբ ինստիտուտի ուսումնական մասը, ֆակուլտետների դեկանատները լուրջ աշխատանք կատարեցին։ Ինստիտուտի ԼԿԵՄ կոմիտեի նախաձեռնությամբ առաջին կուրսեցիների համար ապակետիպի վրա բազմացվեցին և տարածվեցին կուրսային և մեթոդական մի շարք առաջադրանքներ։ Ուսանողների ժամանակը խնայելու համար մի շարք դասախոսություններ և կոնսուլտացիաներ կազմակերպվում էին հենց նրանց աշխատանքի վայրում (օրինակ, Ձերժինսկու անվան գործարանում)։

Արտադրական աշխատանքի հետ ուսման սերտ կապի ուղղությամբ ուսումնական ծրագրերով նախատեսված միջոցառումները հիմնականում վերաբերում են 1959/60 ուս. տարում ինստիտուտ ընդունված ուսանողներին, բայց ուսանողների արտադրական ուսուցման բարելավման գծով զգալի փոփոխություններ կան նաև բարձր կուրսերում։ Վերջին տարվա ընթացքում բարձր մակարդակով անցավ ուսանողների արտադրական և նախադիպլոմային պրակտիկան, այն անցկացվեց միության առաջավոր արդյունաբերական ձեռնարկություններում և կառույցներում։ Ինստիտուտի III և IV կուրսերի մոտ 500 ուսանողներ իրենց պրակտիկան անցկացրին Մոսկվայում, Լենինգրադում, Խարկովում, Մինսկում, Կրամատորսկում և այլ քաղաքներում։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում և շինարարական հրապարակներում իրենց պրակտիկան անցկացրին 417 ուսանողներ։ Նորը արտադրական պրակտիկայի մեջ նաև այն է, որ, ի տարբերություն նախորդ տարիների, ուսանող-

ներն այժմ աշխատում են բանվորական տեղերում, կատարելով հաստիքային աշխատանք։ Որպես դրական օրինակ կարելի է նշել մեխանիկական ֆակուլտետի IV կուրսի ուսանողների լավագույն աշխատանքը Մինսկի տրակտորային և հեծանվի գործարաններում։

Պոլիտեխնիկական ինստիտուտի ուսանողներն աշխատելով հերթափոխություններում, կատարում և գերակատարում են արտադրական նորմանները։ Ձեռնարկության ղեկավարները հիացմունքով են խոսում ուսանողների բարեխիղճ, կարգապահ աշխատանքի մասին։ Պրակտիկայի վերջում ուսանողները ոչ միայն բարձր գնահատականներով հանձնեցին ծրագրով նախատեսված հաշվետվությունը, այլև կարգային նորմաներ ստացան։ Բարձր մակարդակով անցավ նաև շինարարական ֆակուլտետի մի խումբ ուսանողների արտադրական պրակտիկան Կրեմենչուգի հիդրոէլեկտրակայանի շինարարությունում։ Ուսանողներն ակտիվ մասնակցեցին նավագնացության շլյուզի թողարկման աշխատանքներին։ Ինստիտուտը ստացավ Կրեմենչուգի հիդրոէլեկտրակայանի շինարարության պետի հրամանը, որտեղ նշված էր մեր ուսանողների դրական աշխատանքը, իսկ ուսանող Վաղինակ Սահակյանը, որ շինարարությունում ստացել էր 5-րդ կարգի մոնտաժնիկ փականագործի մասնագիտություն, պարգևատրվեց գերազանց շինարարի կրծքանշանով և դրամով։

Պրակտիկան բանվորական տեղերում անցկացնելը ոչ միայն բարձրացնում է ուսանողի մասնագիտացումը, այլև նրա մեջ սեր հարուցում դեպի ֆիզիկական աշխատանքը։

Միության այլ շրջաններում պրակտիկայի կազմակերպումն ու բարձր մակարդակով անցկացումը հսկայական նշանակություն ունի ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության համար։

Տեխնիկական բարձրագույն ուսումնական հաստատության ուսանողության աշխատանքային դաստիարակության համար մեծ նշանակություն ունի նաև դիպլոմային նախագծումը։ Չէ որ կատարելով ռեալ, արդյունաբերության առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ կապված դիպլոմային նախագիծ, ուսանողը լուծում է թեկուզ ոչ մեծ, բայց ժողովրդատնտեսական պրակտիկ խնդիր։ Դիպլոմնիկը գիտե, որ իր աշխատանքի (դեռևս ուսանողական աշխատանքի) արդյունքը մարմնացում կգտնի մետաղի, բետոնի արտադրության մեջ, ժամանակակից նոր մեքենաների ու սարքերի կոնստրուկցիաներում։ Ինստիտուտի ամբիոններն այժմ հատուկ ուշադրություն են հատկացնում դիպլոմային թեմաների ընտրության վրա, զգալի թվով թեմաներ մշակվում են հենց գործարաններում՝ արտադրության մասնագետների ղեկավարությամբ։ Այսպես, ինստիտուտի մեխանիկական ֆակուլտետի այս տարվա շրջանավարտներից 11-ն իրենց դիպլոմային աշխատանքը կատարեցին Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրագործարանում։ Նրանց թեմաները նվիրված են արտադրական պրոցեսների ավտոմատացմանը և նորագույն տեխնոլոգիայի ներդրմանը։ Այդ թեմաները մտել են գործարանի 1960 թ. նոր տեխնիկայի արմատավորման պլանի մեջ։ Ուսանողներ Գ. Փիլոսյանի և Շ. Սարգսյանի աշխատանքները նվիրված էին Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում արտադրվող հաստոցի կառուցվածքի բարելավմանը և նոր տեխնոլոգիական պրոցեսների ներդրմանը։ Ուշագրավ էին նույն ֆակուլտետի ուսանողներ Ռ. Հարությունյանի, Ռ. Ավագյանի, Մ. Ֆահրադյանի և մյուսների աշխատանքները։ Դրանք կատարվեցին ինստիտուտում դոցենտ Վ. Հակոբյանի ղեկավարությամբ և նվիր-



ված են էլեկտրամեքենաշինության համար մետաղական կարծր ձուլվածքներով դրոշմոցների նախագծման և սրման տեխնոլոգիային։ Այդ աշխատանքները կազմում են էլեկտրաշարժիչների արտադրության տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման ուղղությամբ տարվող ուսումնասիրության մի մասը, որի կատարումը ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն ունի։

Բարձրագույն ուսուցման վերակառուցումը վերաբերում է, իհարկե, ոչ միայն բուն ուսուցման պրոցեսին։ Այն նորը, որ այժմ մտնում է բուհական առօրյայի մեջ, չի կարելի սահմանափակել միայն ուսումնական դասատախտակի շրջանակներում։ Այդ նորը ակնառու կերպով երևում է, օրինակ, ֆիզիկական աշխատանքի նկատմամբ ուսանողության վերաբերմունքի մեջ, որն այժմ գնալով դառնում է ապագա մասնագետի պատրաստման անհրաժեշտ տարրը։ Այժմ ուսանողության զգալի մասն ավելի գիտակցաբար է մոտենում ֆիզիկական աշխատանքին. նա զգում է, որ այդ աշխատանքը օգնում է նրան՝ ճիշտ հասկանալու արտադրությունը և տիրապետելու տեսական գիտելիքներին։ Այդ իմաստով աշխատանքը բարձրագույն ուսումնական հաստատություններում դառնում է կոմունիստական դաստիարակության հզոր միջոց։

Ինստիտուտի ուսանողները ակտիվորեն մասնակցեցին Երևանի 3-րդ ջրատարի, գազամուղի շինարարությանը։ Անցյալ ամռանը ինստիտուտի ավելի քան 350 ուսանողներ իրենց հանգստի մի մասը անցկացրին քաղաքի բնակելի շենքերի շինարարության վրա և կոչով դիմեցին մյուս բուհերի և տեխնիկումների ուսանողներին՝ հետևելու իրենց օրինակին։ Ինստիտուտի ֆիզիկական կուլտուրայի և սպորտի ամբիոնի ընկերների ղեկավարությամբ ուսանողության ուժերով Միսխանայի գեղատեսիլ հովտում կառուցվեց և շահագործման հանձնվեց սպորտային առողջացուցիչ ճամբարը, որտեղ իրենց հանգիստն անցկացրին և կազդուրվեցին մոտ 150 ուսանող։

Ինստիտուտի ուսանողները ԼԿԵՄ կազմակերպության ժողովում ինստիտուտի գիտա-հետազոտական աշխատանքների կորպուսի շինարարությունը հայտարարեցին կոմերիտական կառույց և պարտավորվեցին (յուրաքանչյուրը 56 ժամ) աշխատել շինարարության վրա։ Ինստիտուտի ուսանողներն ակտիվորեն մասնակցում են քաղաքի և ինստիտուտի մասշտաբով կազմակերպվող շաբաթօրյակներին և այլ միջոցառումների։ Այսուհետև այս աշխատանքներին է՛լ ավելի մեծ ուշադրություն պետք է դարձնել։

Միշտ պետք է հիշել, որ ուսուցումը և դաստիարակությունը բարձրագույն ուսումնական հաստատություններում անբաժանելի են միմյանցից։ Ուսուցման կապը արտադրական աշխատանքի հետ դաստիարակության խնդիրները դարձնում են է՛լ ավելի կոնկրետ ու նպատակասլաց։ Հարկավոր է, ասում է Ն. Ս. Խրուշչովը, նախ և առաջ, որ դաստիարակությունը օրգանապես կապված լինի կյանքի, արտադրության հետ, մասսաների պրակտիկ գործունեության հետ։ Պարտիան դաստիարակության գործի կենտրոնում դնում է բոլոր մարդկանց աշխատանքային դաստիարակությունը, աշխատանքի նկատմամբ գիտակցական, կոմունիստական վերաբերմունքի զարգացումը։

---

# ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԸ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

### ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՍԻՐԵԼԻՆ

Զիմինո... ետ ընկած մի փոքրիկ գյուղակ՝ Ռյազանի նահանգում: Մի քանի խարխուլ խրճիթ՝ ծռմռված պատերով, ծղոտե տանիքով: Լռությո՜ւն... ամայությո՜ւն: Եվ այդ հնամենի գյուղակում ամենահինը, թերևս, Դմիտրի Վելիկանովի տունն էր: Հենակավոր, ծռված պատերը, կիսավեր ցանկապատը և մի քանի վտիտ հավ, որոնք քուջուջ են անում բակում, բայց կեր չեն գտնում— ահա գյուղացու ամբողջ հարստությունը:

Դժվար էր ապրել, շա՜տ դժվար: Հարկեր պետք էր վճարել, վեց երեխա կերակրել, իսկ հիմա էլ, ահա, աստված յոթերորդ երեխան տվեց՝ Միշան: Ծեր գյուղացին իր բախտն էր անիծում. իբր թե քիչ էին ուտող բերանները, մեկն էլ ավելացավ: Ճիշտ է, սա տղա է, տնտեսության ապավեն, բայց ե՞րբ կմեծանա...

Ծանր էին անցնում օրերը: Հարկավոր էր մի ճար անել, օրվա հացը գտնել: Բայց, այսպես թե այնպես, կիսաքաղց, ցնցոտիապատ Միշան մեծանում էր: Մեծանում էր ու դառնում խելամիտ, ուշիմ տղա: Եվ հենց այդ հատկություններն էլ հորն ստիպեցին 1900 թվականին տալ նրան գյուղի ծխական դպրոցը: Միշան այնպիսի առաջադիմություն ցույց տվեց, որ ուսուցիչների խորհրդով ծերունի Վելիկանովը նրան ուսման ուղարկեց Ռյազան:

Շնորհալի տղան ընդունվեց Ռյազանի հոգևոր սեմինարիան և դարձավ ամենալավ աշակերտը: Հենց դրա շնորհիվ էլ չքավոր, անհող գյուղացու կավակը դպրոցն ավարտելուց հետո արժանացավ չտեսնված շնորհի՝ նշանակվեց հայրենի նահանգի Եկշուր գյուղի պեմստվոյական դպրոցի ուսուցիչ:

Անցնում էին տարիները, և ահա վրա հասավ 1914 թվականի ահավոր տարին. սկսվեց առաջին համաշխարհային պատերազմը: Շուտով բանակ կանչվեց նաև Միխայիլ Վելիկանովը: Վիթխարի արյունահեղ սպանդը ձգվեց հարյուրավոր վերստերի վրա: Մահն ամեն օր առատ հունձ էր անում:



1915 թվական: Քսաներկուամյա Միխայիլ Վելիկանովը նշանակված է դասակի հրամանատար: Ստորաբաժանումը մարտերում ծանր կորուստներ կրեց: Զինվորները դժգոհ էին պատերազմից. սպաների վերաբերմունքից: Եվ, գուցե, հենց սրա համար էլ նոր սպային այստեղ դիմավորեցին սառն ու խեթ աչքով, իսկ զինվորներից մեկը՝ Վասիլի Պետրովը, դեմոնստրատիվ կերպով շուռ եկավ Վելիկանովից, հրացանը գլխիվայր ուսը գցեց ու հեռացավ՝ մի երգ սուլելով:

Երեկոյան Վելիկանովի խնդրանքով Պետրովին կանչեցին հրամանատարական տնակը: Զինվորն ուզում էր ընդունված կարգով զեկուցել իր գալու մասին, բայց հրամանատարը նրա թևը բռնելով՝ նստեցրեց սեղանի մոտ ու ասաց.

— Երևակայիր, Վասիլի, թե դու նոր նշանակված հրամանատար ես, եկել ես դասակ, իսկ ես զինվոր եմ և փոխանակ քեզ հետ ծանոթանալու. իմանալու ինչ մարդ ես դու, մեջքս քեզ եմ դարձնում և դեռ մի քանի «անուշ» խոսք էլ ավելացնում... Լա՞վ կլիներ այդ: Քեզ դուր կգա՞ր:

Զինվորն առանց շփոթվելու նայեց դասակի հրամանատարին: Վելիկանովին նույնիսկ թվաց, թե նրա աչքերի մեջ ուրախ կայծեր շողացին: Բայց Պետրովը պատասխանեց լուրջ, առանց ծիծաղի.

— Եթե հրամանատարներն ինձ նման լինեին, ուզում եմ ասել՝ եթե հասարակ մարդիկ լինեին, և ոչ թե տռցած բուրժուաների կավակներ, դա մեծ բախտավորություն կլիներ ռուսական բանակի համար:

Հրամանատարի և զինվորի զրույցը ձգվեց մինչև ուշ գիշեր: Վելիկանովը, որ դեռ մինչև վերջերս ինքն էլ հասարակ զինվոր էր եղել, լավ գիտեր զինվորի շինել հագած միլիոնավոր ռուս մարդկանց իղձերն ու կարիքները: Այդ զգում էր նաև Վասիլի Պետրովը: Այդ անմոռանալի երեկոյից, ավելի ճիշտ՝ գիշերվանից էլ սկսվեց երիտասարդ հրամանատարի մտերմությունը զինվորի հետ, մտերմություն, որ այնքան մեծ դեր խաղաց Վելիկանովի կյանքում:

Վասիլի Պետրովը դեռ այն ժամանակ գործող բոլշևիկյան ընդհատակյա խմբակի ակտիվ մասնակից էր: Եվ զարմանալի չէ, որ Միխայիլ Վելիկանովը առաջիններից մեկն էր, որ ներգրավվեց այդ խմբակի մեջ: Ժողովրդի ծոցից ելած չքավոր գյուղացու կավակն ամբողջ սրտով հավատաց բոլշևիկների արդար գործին և ամբողջովին անձնատուր եղավ նրան: Դրա բնական հետևանքն այն եղավ, որ փետրվարյան ռևոլյուցիայի օրերին պորուչիկ Վելիկանովը մեկն էր այն առաջին սպաներից, որոնք անցան ռևոլյուցիոն զինվորների կողմը:

...1918 թվականի փետրվար... Հակառևոլյուցիոն ուժերը բոլոր կողմերից շարժվում էին երիտասարդ սովետական երկրի վրա: Այդ ահեղ ժամին աշխարհով մեկ տարածվեց Վլադիմիր Իլյիչ Լենինի կոչը՝ «Սոցիալիստական հայրենիքը վտանգի մեջ է»: Վելիկանովը ռևոլյուցիայի հաղթանակի համար մարտնչողների առաջին շարքերում էր: Նա լեֆորտովյան կարմիրգվարդիական փառապանծ ջոկատի հրամանատարն էր: Իսկ երբ 1918 թվականի կեսերին արևելքում բռնկվեց չեխ ռազմագերիների խռովությունը, որ կազմակերպել էին սպիտակգվարդիականները, Կոմունիստական պարտիան ու Սովետական պետությունն այնտեղ ուղարկեցին իրենց լավագույն կավակներին: Դրանցից մեկն էլ Միխայիլ Վելիկանովն էր:

...24-րդ Սիմբիրսկյան երկաթյա դիվիզիայի շտաբում քննարկվում էր Վոլգայի ձախ ափի վրա հարձակում գործելու հարցը: Դրա համար, առաջին հերթին, հարկավոր էր գրավել երկաթուղային կամուրջը, որ դժվար ու մեծ ջանքեր պահանջող խնդիր էր:

Վելիկանովը և գնդի կոմիսար Նիկոլայ Միխայլովիչ Շվերնիկը սկսեցին խնամքով նախապատրաստել օպերացիան: Սիմբիրսկի կամուրջը հեռադիտակով պարզ երևում էր: Հրամանատարն ու կոմիսարը շատ երկար դիտեցին այդ հիմնական դիրքը. ուշի-ուշով ուսումնասիրեցին խրամատների գծերը, գնդացրային կետերը, պրահեստնացքների մարշրուտները: Եվ, թեպետ ժամանակը կարճ էր, բայց էլի մի քանի գիշեր նրանք զինվորներին վարժեցնում էին փայտից ու ցեխից շինված վարժական «կամուրջի» վրա, որ հապճեպ պատրաստել էին իրենց սակրավորները:

Վրա հասավ գրոհի գիշերը: Նախապես մշակված պլանի համաձայն գնդի մի գումարտակը պետք է գլխավոր հարվածը հասցներ, իսկ երկրորդը՝ շարունակեր հարձակումը: Երկինքը պատած էր մռայլ ամպերով: Գիշերային խավարը խախտում էր միայն Վոլգայի ֆոսֆորափայլ ժապավենը: Հեռվում սևին էր տալիս գետը կտրող վիթխարի կամուրջը: Երկու գումարտակների մարտիկները, քողարկվելով գետնի ամենափոքր ծալքերի հետև, շարժվում էին առաջ: Երբ մինչև նպատակակետը մի քանի մետր էր մնացել, ցամաքի կողմից կամուրջը գոտևորող փշալարերի ժապավենի վրա նռնակներ նետվեցին: Բացված անցքի միջով առաջ նետվեցին կարմիրգվարդիականները՝ հրացանները հորիզոնադիր բռնած: Հարվածն այնքան անակնկալ էր ու համարձակ, որ թշնամին գլխապատառ փախուստի դիմեց: Եվ մի քանի օր հետո գրավվեց նաև Սիմբիրսկը՝ թշնամու պաշտպանության այդ խոշոր հանգուցային կենտրոնը:

Ամիսներ շարունակ 24-րդ Սիմբիրսկյան և 25-րդ Չապաևյան դիվիզիաների հետ կողք-կողքի կռվում էին 20-րդ հրաձգային դիվիզիայի մարտիկները: Դա մի կորամաս էր, որ կռվել էր՝ սպիտակ բանդաներից ազատագրելով Վոլգան, անդրվոլգյան քաղաքներն ու գյուղերը. Հարավային Ուրալը և Բաշկիրիան: Մարտերի ընթացքում այդ երեք դիվիզիաները շատ անգամ էին եղբայրական ձեռք մեկնում իրար, օգնության հասնում ծանր րոպեներին: Եվ հասկանալի է, որ առավել հռչակված հրամանատարների անունները հայտնի էին երեք զորամասերում էլ: Դրա համար էլ, երբ 20-րդ հրաձգային դիվիզիայի մարտիկներն իմացան, որ իրենց զորամասի հրամանատար է նշանակվել Մ. Վելիկանովը, նրանց ուրախությանը սահման չկար: Վելիկանովի ընդունակությունները, անձնական խիզախությունը նրանք բարձր էին գնահատել Օրենբուրգի ազատագրման համար մղված մարտերի ժամանակ: Փառապանծ 20-րդ դիվիզիայի հրամանատարի պոստում էլ Վելիկանովը շարունակեց պայքարը մեր հայրենիքի թշնամիների դեմ մինչև քաղաքացիական պատերազմի վախճանը:

Արևելյան ռազմաճակատում մարտական խնդիրը կատարելուց հետո նրա ղեկավարած դիվիզիան ուղարկվեց հարավ՝ սպիտակգվարդիականների դեմ պայքարելու:

Երիտասարդ սովետական երկրի համար ծանր տարի էր այդ: Գազազած դենիկինցիները համառորեն ձգտում էին դեպի Մոսկվա: Մարտերի ընթացքում Վելիկանովը շատ անգամ իր մարտիկներին ինքն էր գրոհի տանում: Հատկապես

անմոռանալի է Արչեդ գետի ափին տեղի ունեցած մարտը: Մարտիկներն այդտեղ իրենց դիվիզիայի հրամանատարին տեսնում էին ճակատամարտի ամենադժվարին ու պատասխանատու տեղամասերում, որտեղ նա կազմակերպում էր թշնամուն տրվող հակահարվածը, ղեկավարում կոբակենների գործողությունները:

«Քսանականները», ինչպես իրենց կոչում էին 20-րդ դիվիզիայի մարտիկները, երբեք չեն մոռանա Սադլի գյուղի մոտ տեղի ունեցած մարտը: 1920 թվականի հոկտեմբերի 8-ին հետախուզությունը դիվիզիայի շտաբին տեղեկացրեց, որ այդ գյուղում է գտնվում գեներալ Տոպորկովի հրամանատարությամբ գործող թշնամու հեծելազորային կորպուսի շտաբը: Որոշվեց ջախջախել թշնամուն, գրավել շտաբի արժեքավոր փաստաթղթերը: Դիվիզիայի 180-րդ գնդի գրոհը, որ գլխավորում էր ինքը՝ Վելիկանովը, շեշտակի էր և անդիմադրելի: Թշնամու որջը ոչնչացվեց: Այդ դժվարին խնդիրը հաջողությամբ կատարելու համար գունդը պարգևատրվեց Կարմիր դրոշով, իսկ դիվիզիայի հրամանատար Միխայիլ Դմիտրիևիչ Վելիկանովը՝ Կարմիր Դրոշի շքանշանով:

Հետապնդելով դենիկինյան ջախջախված հրոսակախմբերին՝ 20-րդ դիվիզիան երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի մյուս կորամասերի հետ մի շարք փառավոր հաղթանակներ տարավ Ցարիցինի, Ստավրոպոլի ու Թերեքի տափաստաններում և Դաղստանի լեռների վրայով 1920 թվականին դուրս եկավ Անդրկովկասի սահմանները, որտեղ և մտավ 11-րդ փառապանծ բանակի կազմի մեջ:

1920 թվականի ապրիլի վերջն է: Վելիկանովի դիվիզիան մարտական խնդիր է ստանում՝ շարժվել դեպի Բաքու: Մայիսի 1-ին «քսաներորդն» արդեն Ադրբեջանի մայրաքաղաքումն էր: Մի ամիս էլ չանցած՝ դիվիզիան ձեռնամուխ է լինում նոր մարտական խնդրի: Սովետական Ադրբեջանի կարմիր կորամասերի և 11-րդ բանակի մյուս միավորումների հետ միասին նա մասնակցում է մուսավաթականների հակառևոլյուցիոն խռովության ջախջախմանը՝ Գյանջայում:

Դա շատ ծանր ժամանակ էր Հայաստանի աշխատավորների համար: Դաշնակներն արյան մեջ խեղդելով աշխատավորների մայիսյան ապստամբությունը՝ տեռորի էին ենթարկում ժողովրդի լավագույն զավակներին: **Հայաստանում սով** էր: Մահն ամեն օր հազարավոր մարդկային կյանքեր էր խլում: Հայ ժողովուրդը պայքարի ելնելով դաշնակների ատելի լծի դեմ, 1920 թվականի նոյեմբերին երկրում հռչակեց Սովետական իշխանություն: 11-րդ բանակը եղբայրական օգնության ձեռք մեկնեց Հայաստանի աշխատավորներին: 20-րդ հրաձգային դիվիզիայի առջև նոր մարտական խնդիր դրվեց՝ կորամասերը Ղազախից շարժել դեպի Քարվանսարա, Դիլիջան և այնուհետև՝ դեպի Ղարաքիլիսա ու Երևան, օգնություն ցույց տալ Հայաստանի աշխատավորներին նրանց ազատագրական պայքարում: Սովետական ռազմիկները պետք է պաշտպանեին հայ ժողովրդին և փրկեին նրան թուրքական օկուպացիայի սպառնալիքից:

Հայրենի հողի վրա առաջինը ոտք դրեց հայկական ապստամբական գունդը: Նրան հետևեցին Վելիկանովի դիվիզիայի կորամասերը: Սովետական Հայաստանի աշխատավորները կարմիր զինվորներին դիմավորում էին որպես ազատարար եղբայրների, ամեն տեսակ աջակցություն էին ցույց տալիս նրանց: 1920 թվականի դեկտեմբերի 4-ին դիվիզիայի կորամասերը մտան Երևան: Եվ այնտեղ, հանձին Վելիկանովի, դիվիզիայի մարտիկների՝ հայ ժողովուրդը տեսնում էր ռուս մեծ ժողովրդի ներկայացուցիչներին, որն անշահախնդիր օգնության ու բարեկամության ձեռք էր մեկնել աղքատության ու սովի մատնված Հայաստանին:

Մինչ այդ փոթորկալի դեպքեր էին տեղի ունենում նաև Վրաստանում: 1921 թվականի փետրվարին Վրաստանի բանվորներն ու գյուղացիները կոմունիստների ղեկավարությամբ ապստամբություն բարձրացրին մենշևիկների դեմ և կազմակերպեցին Վրաստանի Ռևկոմ: Ռևկոմի խընդրանքով 11-րդ բանակը կորամասեր ուղարկեց Վրաստան: Այդ կորամասերի հրամանատարությունը հանձնարարված էր Վելիկանովին: Թիֆլիսի ուղղությամբ գործող կորախումբը փառապանծ կարմիր հրամանատարի ղեկավարությամբ պատվով կատարեց իր մարտական խնդիրը: Բազմօրյա համառ մարտերից հետո 11-րդ բանակի կորամասերը փետրվարի 24-ին մտան Թիֆլիս: Մ. Դ. Վելիկանովը նշանակվեց Թիֆլիսի կայազորի պետ:

Այդ ժամանակ դաշնակները դիմեցին մի նոր ավանտյուրայի, որը պատմության մեջ մտավ «փետրվարյան ավանտյուրա» անունով: Նրանք զավթեցին ռեսպուբլիկայի մի քանի շրջանները և մայրաքաղաք Երևանը: Այդ ժամանակ ստեղծվեց կորքերի երևանյան խումբ, որի հրամանատարությունը նորից հանձնարարվեց ռուս ժողովրդի հավատարիմ զավակ Մ. Դ. Վելիկանովին:

Դաշնակները կատաղի դիմադրություն են ցույց տալիս, ճգնելով ինչ գնով էլ լինի իրենց ձեռքում պահել Սպիտակի լեռնանցքը, որտեղով իրենք մտադիր էին դուրս գալ երկաթուղագիծը: Այն ժամանակ այդ տեղամասն է գալիս ինքը՝ Վելիկանովը և իր ձեռքն է վերցնում մարտի ղեկավարությունը: Նա թևանցում և շրջապատում է լեռնանցքը՝ ոչնչացնելով հակառակորդի հենակետերը: 14 ժամ է տևում լեռնանցքի համար մղվող ճակատամարտը, և, վերջապես, գրավվում է այն: Կարմիր մարտիկներին մեծ օգնություն են ցույց տալիս Սպիտակի և Ապարանի շրջանների գյուղացիները: Ծռճռան սառնամանիքին, գիշեր թե ցերեկ, հաճախ մինչև գոտիները ձյան մեջ խրվելով, նրանք սակրավորների հետ միասին անցքեր են բացում լեռնանցքում և ճանապարհ հարթում հետևակի ու հրետանու համար, օգնում են առաջ շարժելու կորամասի թիկունքը, ապահովելու հարձակվող կորքերի մատակարարումը ռազմանյութերով ու պարենով:

Վճռական մարտի պահին, մարտի 28-ի գիշերը Սպիտակի և Փամբակի շրջանում կատաղի փոթորիկ էր բարձրացել: Բայց ո՛չ հակառակորդի կրակը, ո՛չ վատ եղանակը չէին կարող կանգնեցնել ազատարար ռուս ռազմիկների առաջխաղացումը: Սկսվում է թշնամու հետապնդումը: Դաշնակներից ազատագրվում են Ապարանի, Աշտարակի և Էջմիածնի շրջանները: Շուտով Ապարան—Աշտարակի ուղղությամբ գործող կորքերը մտնում են Երևան: Միաժամանակ այստեղ են հասնում նաև Ելենովկայի կողմից հարձակվող կորամասերը: Ապրիլի 2-ին ազատարարների հաղթական դրոշը նորից ծածանվում է Սովետական Հայաստանի մայրաքաղաքի վրա: Վելիկանովը պատվով է կատարում իր մարտական խնդիրը՝ ազատագրել Երևանը, այնտեղ վերականգնել Սովետական իշխանությունը:

Դրանից հետո Վելիկանովն իր շտաբով երկու ամիս մնաց Երևանում: Նա զբաղվում էր կորքերի ուսուցմամբ ու համալրումով, նրանց սպառազինումով, օգնում էր կազմակերպելու հայկական ազգային կորամիավորումներ: Խաղաղ կյանքի օրերին Վելիկանովը հաճախ էր լինում Երևանի գավառի գյուղերում, Ալեքսանդրոպոլում, Ղարաքլիսայում, Նոր Բայազետում և այլ վայրերում, որտեղ կորախմբեր էին կանգնած, միաժամանակ նրա կորախումբը ակտիվ կերպով մասնակցում էր դաշնակյան հակառևոլյուցիայի վերջին օջախի ոչնչացմանը Զանգեզուրում:

Իր քաջության, ռազմական հմտության և Հայաստանում կատարած հիանալի ռազմական գործողությունների, հայ ժողովրդին մատուցած մեծ ծառայությունների համար Միխայիլ Դմիտրևիչ Վելիկանովը Հայկական ՍՍՌ Ժողովրդական Կոմիսարների Սովետի որոշմամբ, 1921 թվականի հուլիսին պարգևատրվեց Հայկական ՍՍՌ Կարմիր Դրոշի շքանշանով:

...Եկան ստեղծագործական բուռն աշխատանքի տարիներ: Ավարտելով Կարմիր Բանակի ռազմաակադեմիական բարձրագույն դասընթացները, Մ. Վելիկանովը վերադառնում է Անդրկովկաս և նշանակվում Առաջին Կովկասյան դիվիզիայի հրամանատար: Հետագայում պարտիայի ու ժողովրդի ականավոր զավակը հրամանատարական ղեկավար պոստեր է գրավում Հյուսիս-Արևելյան Մերձվոլգյան, Սիբիրյան և Մոսկովյան ռազմական օկրուգներում, իր գիտելիքներն ու եռանդն ամբողջապես նվիրաբերելով Հայրենիքի պաշտպանության ամրապնդման գործին:

Խաղաղությունը վտանգի տակ է... Արևմուտքում մոլեգնում է ֆաշիզմը, Հեռավոր Արևելքում պատերազմի կրակն են բորբոքում ճապոնական միլիտարիստները: Այդ լարված տարիներին կոմանդարմ Մ. Վելիկանովը վարում է Միջին-Ասիական և Զաբայկալյան ռազմական օկրուգները, ռազմիկներին կոփելով ապագա գոտեմարտերի համար: Նա եղել է միութենական ռեսպուբլիկաների և ՍՍՌՄ Կենտգործկոմների անդամ: Բարձր գնահատելով նրա՝ հայրենիքին մատուցած ծառայությունները՝ Սովետական կառավարությունը նրան պարգևատրել է Կարմիր Դրոշի երեք շքանշաններով:

Է. ՑԱՎՐՈՒՄՅԱՆ

Ծնվել է 1900 թվականին, փետրվարի 21-ին. Կաhիրեում, արհեստավորի ընտանիքում: Տասը տարեկան էր, երբ նրա ծնողները գաղթեցին Վան, իսկ մի հինգ տարի հետո էլ՝ Երևան: 1917 թվականին Երևանի հայոց հոգևոր ուսումնարանում էր սովորում, ուր և փաստորեն սկսվում է նրա ռևոլյուցիոն կյանքը:

Այստեղ է նա ծանոթանում ու մտերմանում Ղուկաս Ղուկասյանի ու Աղասի Խանջյանի հետ: Սկսում է նրանց հետ միասին աշխատել քաղաքի երիտասարդության շրջաններում: Արմենակը դասախոսություններ է կարդում, մերկացնում ռեակցիոն ուսուցիչների և կրոնավորների խավարամիտ քարոզների սնամեջ բովանդակությունը: Հանդես է գալիս բոլշևիկյան մամուլում, համարձակորեն մերկացնելով դաշնակցականներին: Նա բոլշևիկյան կազմակերպության հանձնարարությամբ աշխատել է զինվորական մասերում: Բայց այսօր. Հայաստանի Կոմերիտմիության Կենտկոմի քարտուղարին դարձյալ ու դարձյալ թվում է, թե ինքը կյանքում քիչ բան է արել:

«Այ, Ղուկասը ուրիշ,— սովորաբար մտածում էր Արմենակը:— Այ, թե ով է ապրել լի ու հարուստ կյանքով: Ղուկասը եթե հերոսական կյանքով ընկած չլիներ, ապա նա՛ պետք է լիներ կոմերիտմիության Կենտկոմի քարտուղարը: Նա պետք է գլխավորեր Հայաստանի երիտասարդությանը»:

«Քո կյանքը դեռ պետք է», ամեն անգամ պատգամի նման էր հիշում Արմենակն այս խոսքերը: Դա մի խոշոր պարտք էր, որ ընկերները դրել էին նրա վրա: Ինքը պետք է փոխարինի նրանց: Ու ոչ մի ջանք չէր խնայում Արմենակը. ընկերներին երախտահատույց լինելու համար:

Սակայն 1921 թվականի փետրվարին դաշնակցականներն ավանտյուրայի դիմեցին: Նրանք խռովություն բարձրացրին սովետական ջահել ռեսպուբլիկայի դեմ: Սովետական, պարտիական և կոմերիտական շատ գործիչներ ընկան դաշնակների ձեռքը: Դրանց թվում էր նաև Արմենակ Բուդաղյանը:

...Այդ տարի ձմեռն, ասես, չէր ուզում հեշտությամբ հեռանալ Հայաստանի լեռներից ու դաշտերից:

Մարտի 25-ին այնպես ցուրտ էր, կարծես դեռ խոր ձմեռ լիներ:

Երևանի բանտի դռները բացվեցին և 63 կոմունիստ բանտարկյալներ դաշնակցական մաուզերիստների ուղեկցությամբ դուրս բերվեցին բանտից:

Շատերի հագին կարգին շոր չկար, ոմանք ծեծից ու խոշտանգումներից բոլորովին ուժասպառ էին եղել, բայց նրանք մնացել էին անընկճելի: Չդողալ անիծյալ թշնամու առաջ, գլուխ չխոնարհել: Շարքից մի փոքր ետ մնալու համար դաժանորեն խփում ու ծեծում էին մարդկանց: Խփում էին մաուզերների բռնակներով, հրացանների խսպակոթերով:

Կոմունիստների մեջ ամենից ավելի ուժասպառը և թույլը Հրաչ Պողոսյանն էր: Նախորդ օրը երեկոյան նրան տարել էին հարցաքննության ու ծեծել: Նրա մարմնի վրա ոչ մի անվնաս տեղ չէր մնացել: Նա հազիվ էր կարողանում քայլել և շարունակ ետ էր մնում, որի պատճառով շարունակ նրա մեջքին տեղում էին հարվածները...

Արմենակը սիրտ էր տալիս ընկերոջը. այդպիսին էր Արմենակը: Նա շարունակ հասնում էր ընկերներից նրանց, ովքեր ամենից ավելի կարիք էին զգում օգնության, սրտապնդվելու:

Բայց ճանապարհի ոլորապտույտներից մեկում Հրաչը սայթաքեց և ընկավ:

Չարախինդ ծիծաղով դաշնակցական զինվորն աքացի հասցրեց ընկածին:

— Սրիկա՛,— գոռաց Արմենակը:

Նա թեքվեց և մարմնով ծածկեց ընկերոջը. մաուզերիստի հետագա հարվածներից նրան պաշտպանելու համար:

Այժմ հարվածները տեղացին Արմենակի մեջքին ու գլխին: Ըմբոստ ոգին ծառացավ:

Արմենակի աչքերը միանգամից բոցավառվեցին ատելության կրակով: Նա, որ արտաքինով մի սովորական պատանի էր միայն, մի ակնթարթում կերպարանափոխվեց, ուղղվեց, ատելությամբ նայեց դաշնակ զինվորի դեմքին. այդ պահին նա մի հսկա երևաց գազազած մաուզերիստի աչքին: Արմենակը քայլեց դեպի ատելի զինվորը: Շառաչեց ապտակը, և զինվորը գետին կտապալվեր, եթե նրան չպահեր մոտեցող դաշնակ-մաուզերիստը:

Հենց նույն զինվորն էլ հրացանի սվինով հարվածեց Արմենակին:

Այդ զինվորը Բախշին էր:

Դա նույն զինվորն էր, որ դաշնակցական ավանտյուրայից առաջ պահակ էր կանգնում այն խցի մոտ, որտեղ ձերբակալված էր նաև Արմենակը:

Վերջին անգամ Արմենակի հրացայտ աչքերը հանդիպեցին նրան սվինահարող կավրելի Բախշիին: Արմենակի անշնչացած մարմինն ամբողջովին ծածկվեց խոր վերքերով և արյամբ...

Փետրվարյան ավանտյուրան մահամերձ դաշնակցության վերջին, հուսահատ ճիգն էր, հուսահատ ճիգը խեղդվողի, որը ձեռքը գցում է փրփուրին:

Ընկավ Արմենակ Բուդաղյանը:

Նոր էր լրացել նրա 20 տարին: Նրա ողջ կյանքը դեռ առջևումն էր: Եվ, գուցե, կյանքում միակ անձնականը, որ նա ունեցավ, անծանոթ աղջկա պարգևած այն ժպիտն էր, որ նրան շողաց Աստաֆյան փողոցում: Նա կյանքում ամեն ինչ, բոլոր ջանքերը, բոլոր ուժերը դրեց կոմունիզմի մեծ գործին:

Եվ դրանով էլ անմահացավ... Նրա կյանքը ժողովրդի ապատության շողն էր:

Ծ. ԹԱԹԻԿՅԱՆ



# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄԵՐ ՕՐԵՐԻ ՀԵՐՈՍԸ



*Նայում ենք այս լուսանկարին ու մտածում, որ այն երևի պատկանում է Սովետական Միության բարձրաստիճան մի զինվորականի, որի կուրծքը զարդարված է «Ոսկե Աստղ» մեդալով, Լենինի երկու շքանշանով, Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով ու մի քանի մեդալներով:*

*Բայց երբ ծանոթանում ենք կառավարական այդ մեծ պարգևները կրողի կենսագրությանը, պարզ է դառնում, որ նա բոլորովին առնչություն չունի զինվորական գործի հետ. նա հասարակ, շարքային համեստ աշխատող է, անվանի կոմբայնավար:*

*1936 թվականին, երբ Թալինի շրջանում կազմակերպվեց մեքենա-տրակտորային կայան, այն սպասարկում էր նաև Արեգ գյուղի կոլտնտեսությանը: Գյուղի կոլտնտեսականները մեծ հետաքրքրությամբ դիտում էին տրակտորի աշխատանքը, որը հնդալով առաջ էր շարժվում, իր հետևից թողնելով խոր ակոսների թարմ շերտեր: Բայց կոլտնտեսականներին ամենից շատ հետաքրքրում էր, թե իրենց համագյուղացի, հովվի տղա Աշոտը ե՞րբ կարողացավ սովորել մեքենա վարել, որ այժմ հմուտ վարպետի նման նստած է տրակտորի ղեկի մոտ:*

*Օրերն անցան արագությամբ: Իր աշխատասիրությամբ երիտասարդ մեխանիզատոր Աշոտ Նիկոյանը դարձավ Սովետական Միությունում հռչակված կոմբայնավարներից մեկը:*

*...Աշուն է: Արեգում քաշխվում է առատ բերք: Բոլորը համոզվեցին, որ առատության հիմքը նոր տեխնիկայի հետ զոդված Աշոտի պես աղնիվ աշխատողների գործունեությունն է:*

*...1941 թվականի ամառ: Սկսվում է Հայրենական Մեծ պատերազմը: Արեգ գյուղից շատ շատերը մեկնում են ռազմաճակատ: Բաժանվելով Աշոտից՝ նրանք ասում են.*

*— Դու թիկունքում ավելի պիտանի ես, մնա այստեղ և հացով ապահովիր երկիրը: Մենք ֆաշիստներին կջախջախենք զենքով, իսկ դու՝ հացով:*

— Լավ, ամոթով չեմ մնա իմ Հայրենիքի, ձեր և ծնողներիս առաջ,— համեստորեն ասում է նա:

Պատերազմի տարիներին նա աշխատեց որպես կոմբայնավար և տրակտորային բրիգադայի բրիգադավար: Նրան կարելի էր տեսնել Արեգում կամ Սարունջում, Զարինջայում կամ Գետափում, մերթ շրջանի տարբեր գյուղերում՝ տրակտորի կամ կոմբայնի ղեկի առաջ նստած վար կամ հունձ կատարելիս:

1943 թվական: Ամենքի կողմից սիրված կոմբայնավարը հունձ է կատարում Գետափ, Թլիկ, Սորիկ, Արեգ գյուղերում: Միայն նա կոլտնտեսությունների պահեստն է ուղարկում ավելի քան 15 հազար ցենտներ հացահատիկ: Պարտիան և կառավարությունը անուշադիր չթողեցին հայրենասեր կոմբայնավարի անձնուրաց աշխատանքը և նրան արժանացրին Լենինի շքանշանի: Կառավարական առաջին բարձր պարգևի առթիվ Աշոտ Նիկոյանը ստացավ բազմաթիվ ողջույններ ու շնորհավորական հեռագրեր: Այդ բոլորին նա պատասխանում էր երկու բառով.

— Ես իմ պարտքն եմ կատարում Հայրենիքի հանդեպ:

Նոր պարգևը նոր սխրանքների ոգեշնչեց Աշոտին: 1952 թվականին աշխատանքային 25 օրում նա շրջանի տարբեր կոլտնտեսություններում հնձեց և պահեստները հանձնեց շուրջ 12 հազար ցենտներ հացահատիկ, այսինքն՝ բերքահավաքի ժամանակ նա աշխատանքային ամեն մի օրում Հայրենիքին տալիս էր 2.680 փութ հացահատիկ: Հենց այդ արիության, անձնվեր փորձունեության համար էր, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը նրան շնորհեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում, հանձնելով Լենինի շքանշան և «Ոսկե աստղ» մեդալ:

Կառավարական այդ մեծ պարգևներից հետո էլ Նիկոյանը մնաց այնպես համեստ, ինչպես միշտ: Նա սիրում է իր աշխատանքն ու մեքենան, հարգում աշխատասեր մարդկանց:

Թալինի շրջանի մեխանիզատորները խոր ակնածանքով են խոսում ՀՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Աշոտ Նիկոյանի մասին: Իսկ որտեղի՞ց է գալիս այդ մեծագույն հարգանքը: Պատասխանը պարզ է: Շրջանում դժվար գտնվի մի կոմբայնավար կամ տրակտորիստ, որը սովորած չլինի Աշոտի մոտ: Արեգում այժմ կա ավելի քան 50 մեխանիզատոր: Որտե՞ղ են սովորել նրանք, եթե ոչ Աշոտ Նիկոյանի մոտ: Նույն գյուղի կոլտնտեսության նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Անդրանիկ Սվազյանը, որն այդ բարձր կոչմանն է արժանացել կոմբայնային բերքահավաքի ժամանակ առավելագույն բարձր արտադրանք տալու համար, սովորել է Աշոտի մոտ: Քանի՜, քանի շաբաթներ ու ամիսներ Աշոտը նրան սովորեցրել է մեքենան վարելու և խնամելու տեխնիկան, մինչև որ նա էլ դարձել է իր նման հմուտ մեխանիզատոր, իսկ այժմ ղեկավարում է Արեգի խոշոր կոլտնտեսությունը:

Շրջանում անվանի մեխանիզատորի համբավ ունեն կոմբայնի վարպետի նախկին սաներ՝ Հրաչ Կարապետյանը, Արամայիս Խաչատրյանը, Հողմիկ և Ռազմիկ Նիկոյանները, Գուրգեն և Վաչագան Մառանչյանները, Հայկազ և Սերյոժա Գրիգորյանները, որոնք սխրանքներ են գործում կոլտնտեսային դաշտերում:

Աշոտը երբեք չի բավարարվում ձեռք բերած նվաճումներով. նրա միտքը



որոնող է, պրպտող և միշտ ձգտում է տիրապետել նորին ու արմատավորել այդ նորը, առաջավորը: 1958 թ. աշնանը մեր մեծ Հայրենիքում սկսեց ծնունդ առնել կոմունիստաբար ապրելու և աշխատելու հայրենասիրական նոր շարժումը: Աշոտ Նիկոյանը ռեսպուբլիկայի մեխանիզատորների մեջ առաջինն էր, որ արձագանքեց այդ համաժողովրդական շարժմանը:

Այդ հարցը քննարկվեց բրիգադայի արտադրական խորհրդակցությունում, ուր միահամուռ որոշվեց ապրել և աշխատել կոմունիստաբար, նշանաբան ունենալով «Մեկը բոլորի, բոլորը՝ մեկի համար» լոզունգը:

Հենց այդ նույն խորհրդակցությունում էլ բրիգադայի անդամները կոչ ընդունեցին՝ ուղղված շրջանի բոլոր մեխանիզատորներին ու երիտասարդներին: Պարտիայի շրջանային կոմիտեն քննարկեց ու հավանություն տվեց նրանց կոչին, իսկ շրջանային «Կոմունիզմի դրոշով» թերթն էլ հրապարակեց այդ կոչը, որին շրջանում շատ շատերը հետևեցին: Աշոտի բրիգադայի օրինակով Զարինջայի, Մաստարայի կոլտնտեսությունների մեխանիզատորները, Արտենիի սովխոզի Վ. Գրիգորյանի ղեկավարած բրիգադայի այգեգործները, Արագածի ոչխարաբուծական սովխոզի անասնապահները նույնպես որոշեցին ապրել ու աշխատել կոմունիստաբար:

Աշոտ Նիկոյանի ղեկավարած բրիգադան պայքարելով կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչմանն արժանանալու համար, ինչպես արտադրական առաջադրանքը կատարելիս, այնպես էլ կոլեկտիվի անդամների վարքագծի, կենցաղային ու բարոյականության նորմերի պահպանման գործում հասավ լավ արդյունքների, որի շնորհիվ էլ անցյալ տարի հուլիսին, պարտիայի շրջանային կոմիտեի որոշմամբ, Արեգի կոլտնտեսության տրակտորային բրիգադային շնորհվեց կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչում: Այդ կոչման արժանանալը նոր սխրանքներ ներշնչեց Աշոտի ղեկավարած բրիգադայի տղաներին:

Յոթնամյակի երկրորդ տարվա փետրվար ամիսն էր: Կոլտնտեսությունում սկսվել էին գարնանացանի նախապատրաստական աշխատանքները: Կոմունիստաբար աշխատող ու ապրող Աշոտի բրիգադայի տղաներից Նրջանիկ Ավոյանն ու Սերյոժա Մկոյանը զտեցին 200 ցենտներ կորնգանի սերմացու, Ռաֆիկ Ասլանյանը, Արսեն Մաթևոսյանը, Սերյոժա Խաչատրյանը, Ռազմիկ Նիկոյանը, Արամայիս Խաչատրյանը, Արմենակ Դարբինյանը և մյուսները վերանորոգեցին կոմբայններն ու տրակտորները:

Սակայն ոչխարաբուծական ֆերմայում վիճակը լավ չէր և դա հուզում էր բոլորին: Եվ ահա կոմունիստաբար ապրողները որոշում են օգնել ֆերմայի իրենց ընկերներին: Նրանցից Արամայիսը, Ռազմիկը, Սերյոժան անմիջապես մեկնեցին ձմեռանոց, օգնեցին ոչխարաբույծներին հանրային հոտի ծինն անցկացնելու գործում:

Մեխանիզատորներին կարելի է տեսնել նաև ուրիշ օբյեկտներում: Կառուցվում է Արեգ—Սարունջի խճուղին: Ահա իրենց ազատ ժամերին նրանք կոլտնտեսականների հետ միասին մասնակցում են այդ լավ նախաձեռնությանը:

Բայց բրիգադային նոր փառք ու պատիվ բերեցին յոթնամյակի երկրորդ տարվա դաշտային աշխատանքները, որոնց պտուղներն այժմ արդեն վայելում են ոչ միայն իրենք, այլև բոլոր համագյուղացիները: Գարնանը բրիգադան հաջողությամբ կատարեց 110 հեկտար հացահատիկի, 35 հեկտար եգիպ-

*տացորենի ցանքը, ինչպես նաև 200 հեկտար կորնգանի ենթացանքը։ Դրան հաջորդեց 600 հեկտար հացահատիկային կուլտուրաների մշակումը։ Մեխանիզատորների ու կոլտնտեսականների համագործակցված աշխատանքի շնորհիվ հացահատիկի դաշտերում հասունացավ առատ բերք։*

*— Այս տարվա մեր բերքը ծով է,— ասում է երկարամյա բրիգադավար Հայկազ Կարապետյանը։— Դրանում մենք պարտական ենք կոմունիստաբար աշխատող և ապրող բրիգադայի մեխանիզատորներին։ Չէ՞ որ մեզ մոտ ամբողջ դաշտային աշխատանքները կատարում են նրանք՝ տրակտորիստներն ու կոմբայնավարները։ Վաղուց մենք մոռացել ենք արորով ու եզան գութանով վար կատարելը, իսկ հացահատիկի բերքահավաքի ժամանակ ձեռքով հունձ գրեթե չենք կատարում։*

*Կոլտնտեսության ղեկավարների հետ մեկնում ենք Դուրան կոչվող դաշտը, ուր հունձ է կատարում դաշտերի հերոսը։ Ընդարձակ հարթավայրը հանդարտ ծովի նման ալեկոծվում է, իսկ կոմբայնի փառաբանված վարպետը, ղեկն ամուր պահած ձեռքերում, առաջ է շարժվում բերքի ծովում։*

*— Մեր Աշոտը հատուկ խառնվածքի տեր մարդ է,— ասում է կոլտնտեսության նախագահը։—Հնձի առաջին օրից սկսած նա և մյուս մեխանիզատորները ոչ մի ժամ չեն բացակայել դաշտից։*

*Եվ իրոք, լարված աշխատելով, մեխանիզատորներն անկորուստ հավաքեցին իրենց աճեցրած առատ բերքը, յուրաքանչյուր հեկտարից ամբարելով 18—20 ցենտներ հացահատիկ։*

*Բրիգադայի յուրաքանչյուր անդամ հասարակական հանձնարարություն ունի։ Երջանիկ Ավոյանը հասարակական կարգի պահպանման դրուժինայի պետի օգնական է։ Նրան, ինչպես նաև մեխանիզատոր-դրուժիննիկներ Սերյոժա Մկոյանին, Արամայիս Հարությունյանին հաճախ կարելի է տեսնել հասարակական կարգ ու կանոնին հետևելիս։*

*Իսկ Արամայիս Նիկոյանը լավ ագիտատոր է։ Նրան հաճախ կարելի է տեսնել այս կամ այն հարցի մասին մեխանիզատորների հետ զրուցելիս։ Դաշտում հերոսական աշխատանք կատարելու հետ միասին, նրանք չեն մոռանում նաև զբաղվել գեղարվեստական գրականության ընթերցանությամբ, սիստեմատիկաբար դիտում են կինոնկարներ։ Ահա ընդմիջման ժամ է. տրակտորիստները հավաքված Երջանիկ Ավոյանի շուրջը լսում են նրա բարձրաձայն ընթերցանությունը գեղարվեստական այս կամ այն գրքից։ Իսկ ինքը՝ Երջանիկը, անցած յոթ ամսում կարդացել է ավելի քան 15 անուն գեղարվեստական գիրք։*

*Մեր օրերի հերոս Աշոտ Նիկոյանն այժմ յոթ երեխայի հայր է։ Նրա երջանիկ ընտանիքը հաճախ հիշում է այն տխուր անցյալը, երբ Աշոտի հայրը մի կտոր հացի կարոտ էր։*

*Այսպես է դիմավորում իր վերածնության և ազատագրման քառասնամյա մեծ տոնը երբեմնի հետամնաց և խավար հայ գյուղացին։*

Բ. ՀԱՐՈՅԱՆ

# ՇԻՐԱԿԻ ԱՆՎԱՆԻ ԴՈՒՍՏՐԸ



*Շիրակի հարթավայրի արծաթազօծ գոտին՝ հորդահոս Ախուրյանը, դուրս գալով անդնդախոր ձորից, մի փոքր ոլորվում և նորից իր ուղղաձիգ հունով շարունակում է ընթացքը դեպի հարավ։ Այդ ոլորանի բարձրադիր ափին փռված է Ախուրյանի շրջանի Ախուրիկ գյուղը։*

*Սովետական իշխանության տարիներին բոլորովին փոխվել է Ախուրիկը։ Նախկին գետնափոր խրճիթներին փոխարինել են վարդագույն տուֆից կառուցված, թիթեղածածկ, լուսավոր ու ընդարձակ բնակարանները։ Վաղուց պատմության գիրկն են անցել համաճարակ հիվանդությունները, մասսայական անգրագիտությունը։ Ամեն տարի տեղի միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո բարձրագույն ուսումնական հաստատությունները կամ արտադրություն են մեկնում 30—35 շրջանավարտ։ Հուշ է դարձել պապենական ձեթի ճրագը։ Ախուրիկի կենցաղում հաստատուն տեղ է գրավել էլեկտրականությունը, որը լայնորեն կիրառվում է նաև կոլտնտեսային արտադրության մեջ։ Ձեռքի աշխատանքին փոխարինել է մեքենան։ Այժմ կոլտնտեսությունն ունի 20 տրակտոր (15 ձիաուժի վերածած), 3 կոմբայն, 5 ավտոմեքենա։*

*Ախուրիկցիները հմուտ հողագործի, աշխատասեր մարդու համբավ են վայելում։ Նրանք յոթնամյակի առաջին տարում շաքարի ճակնդեղի պլանտացիաների ամեն մի հեկտարի միջին բերքատվությունը հասցրին 521 ցենտների և առաջնությունը շահեցին ինչպես շրջանում, այնպես էլ ռեսպուբլիկայում։ Կոլտնտեսության դաշտավարները 5 ցենտներով գերակատարեցին հացահատիկի միջին բերքատվության պլանը. յուրաքանչյուր հեկտարից 11-ի փոխարեն հավաքեցին 16 ցենտներ բերք։ Հաջողությունները զգալի են նաև անասնաբուծական մթերքների արտադրության բնագավառում։*

*Յոթնամյակի երկրորդ տարին Ախուրիկի աշխատավորները թևակոխեցին հաջողությունների ամրապնդելու, նոր, ավելի բարձր ցուցանիշներ ձեռք բե-*

*բելու, հայ ժողովրդի վերածննդի տոնը կուլտուրական արտադրության բոլոր բնագավառներում տարեկան պլանները կատարած ու գերակատարած դիմավորելու ձգտումով։*

*Ախուրիկի կոլտնտեսությունում բազմաթիվ առաջավորներ, իրենց գործի իսկական վարպետներ կան։ Բայց այդ բոլորի մեջ իր ուրույն տեղն ունի երիտասարդ ճակնդեղագործուհի Սեդա Սարգսյանը։ Համագյուղացիները մի առանձին սիրով ու հարգանքով են խոսում նրա մասին։*

*— Կարծես թե երեկ էր,— ասում է դպրոցի դիրեկտորը,— որ Սեդան դպրոցական պայուսակը ձեռքին, կոկիկ, մաքուր հագնված դասի էր շտապում։ Ծնողական ժողովներին երբ գովաբանում էին նրա գերազանց առաջադիմությունը, նա կախում էր գլուխն ու ժպտում, և այտերի վրա առաջանում էին փոսիկներ։ Մեր ուսուցչական կոլեկտիվը միշտ սիրով է հիշում Սեդային։ Նա մեր դպրոցի ամենակարգապահ, ամենաառաջավոր աշակերտներից մեկն է եղել։*

*Ավարտելով տեղի միջնակարգ դպրոցը, Սեդան ընդունվում է Լենինականի դաշտավարական տեխնիկումը։ Անցնում են պրպտումներով լի ուսման տարիները։ Սեդան հայրենանվեր աշխատանքի մեջ է գտնում մարդու վեհությունը, երջանկությունը։ Նրա հոգին ձգտում է դեպի դաշտ, դեպի խիզախումներ՝ կոմունիզմի ծավալուն կառուցման գործում իր լուման մտցնելու համար։*

*1958 թվական։ Կրտսեր ագրոնոմի դիպլոմը ձեռքին՝ Ախուրիկի կոլտնտեսության գրասենյակ է մտնում միջահասակ, կենսախինդ, ջահելության կրակով լի թխավարս մի աղջիկ և դիմումը հանձնում կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Կ. Մովսիսյանին։ Վերջինս սիրով ընդունում է Սեդային, կարդում նրա դիմումը և ժպտալով ասում.*

*— Ճակնդեղագործական որևէ օղակում աշխատանքի անցնելու մասին ձեր խնդրանքը չեմ մերժում, բայց ես նպատակահարմար եմ գտնում, որ դուք աշխատեք բանջարաբուծական բրիգադայի բրիգադավար։*

*— Առայժմ շուտ է,— պատասխանում է Սեդան։— Ես դեռ անփորձ եմ, ինձ հարկավոր է սովորել։ Ուզում եմ ճակնդեղագործությունից սկսել։*

*...Ձնհալ է. սպիտակ սավանն իր փեշերը քաշել, բարձրացել է լեռներն ի վեր։ Քչքչալով հոսում են առվակները, խառնվում իրար և լցվում հորդահոս Ախուրյանը։ Գարուն է Շիրակի դաշտավայրում։ Պարարտ հողը գոլորշի է արտաշնչում՝ սպասելով սերմնացանին։ Սկսվում է գարնան դաշտային աշխատանքների եռուզեռը։ Դաշտում է նաև Սեդան։ Նա աշխատանքի է անցել տարիների հարուստ փորձ կուտակած անվանի ճակնդեղագործուհի Զոյա Մանուկյանի ղեկավարած օղակում։*

*Սեդան ուշիուշով հետևում է օղակավարուհուն, քայլ առ քայլ յուրացնում նրա փորձն ու հմտությունը, պլանտացիաների մշակման տարբեր էտապների վերաբերյալ գրառումներ կատարում իր փոքր բլոկնոտում։ Շատ հաճախ նա պլանտացիաների մշակման իրենց ձևերն ու մեթոդները համեմատում է մամուլում, հատկապես «Ճակնդեղագործ» ամսագրում տպագրված՝ երկրի առաջավոր ճակնդեղագործների աշխատանքի ձևերի ու մեթոդների հետ։*

*Անցնում է մեկ տարի։ Սեդան արդեն ճակնդեղագործ-օղակավարուհի է։*

*Քրտնի՛ր, համառի՛ր, վարժվի՛ր, անընդհատ ուսումնասիրի՛ր նորն ու*



*առաջավորը և կկարողանաս տիրապետել շաքարի ճակնդեղի բարձր բերք ստանալու գաղտնիքներին։ Այս նշանաբանով են սկսում իրենց աշխատանքը ինչպես Սեդան, այնպես էլ նրա օղակի անդամները։ Նրանք, հաշվի չառնելով ձմռան ցուրտն ու բուքը, ձեռնամուխ են լինում տեղական պարարտանյութերը՝ գոմաղբը, մոխիրը և թռչնաղբը դաշտ փոխադրելու գործին։ Հունվար-փետրվար ամիսներին օղակին հատկացված յուրաքանչյուր հեկտարի համար դաշտում կուտակվում է 25 տոննա պարարտանյութ։*

*Վրա է հասնում գարունը։ Ճակնդեղագործները հողի երեսին հավասարապես շաղ են տալիս ձմռանը կուտակված պարարտանյութը, օգնում մեխանիզատորներին հողը ցանքին նախապատրաստելու համար։ Ի տարբերություն մյուսների, Սեդայի օղակի ճակնդեղագործները ցանքի ժամանակ էլ սերտորեն համագործակցում են մեխանիզատորների հետ, որպեսզի ճակնդեղը ցանվի ուղիղ շարքով, որը մեծ չափով կնպաստի մշակման հետագա աշխատանքներին։*

*Երիտասարդ ճակնդեղագործուհին ու նրա օղակի բոլոր անդամները հրճվանքով են դիմավորում պլանտացիաներում կանաչ ժապավենի նման ձգվող ճակնդեղի նորածիլ զույգ տերևների երևալը։ Նրանք անմիջապես ձեռնամուխ են լինում առաջին մակերեսային փխրեցմանը։ Փխրեցում կատարելիս Սեդան օղակի անդամներից պահանջում է, որ զգույշ լինեն և հողով չծածկեն մատղաշ ծիլերը։ Փխրեցրած տարածությունը ոտքով չամրացնելու համար նա ճակնդեղագործներին սովորեցնում է, որ կանգնեն երկրորդ շարքի մեջ և փխրեցնեն առաջին շարքը։ Սեդայի այս առաջարկությունը շուտով լայն կիրառում է գտնում։*

*Առաջին մակերեսային փխրեցմանը հաջորդում է քաղհան-նոսրացումը։ Մինչև սկսվելն մշակման այս էտապի աշխատանքները, Սեդան իր օղակի անդամներին ծանոթացրեց եղբայրական Ուկրաինայի առաջավոր ճակնդեղագործների փորձին։*

*— Շաքարի ճակնդեղի բարձր բերք ստանալու հիմնական նախապայմաններից մեկը քաղհան-նոսրացումն է։ Մշակման այս էտապը,— ասում էր Սեդան,— մենք կատարելու ենք սեղմ ժամկետում և բարձր որակով։ Եթե ձգձգենք պլանտացիաների քաղհանը կամ նոսրացումը, մոլախոտերը հողից կխլեն սննդարար նյութերը։*

*Հեկտարում 110—120 արմատ ունենալու համար նա խնդիր է դնում, որ բույսերի միջև եղած տարածությունը 15—17 սանտիմետրից ավելի չլինի։ Բացի այդ, հեկտարի լիարժեքությունը ապահովելու նպատակով Սեդան դիմում է նաև նոսր շարքերում սածիլում կատարելու մեթոդին։ Ճակնդեղագործները խիտ աճած տեղերից փայտիկի օգնությամբ հանում են փարթամ բույսերը և սածիլում նոսր տեղերում։*

*Քաղհան-նոսրացումն ավարտելուց հետո ճակնդեղագործները անցնում են պլանտացիաների երկրորդ մակերեսային փխրեցմանը, որը նախորդի համեմատությամբ 4—5 սանտիմետր խոր են կատարում։ Այնուհետև սիստեմատիկաբար ստուգում են պլանտացիաները, սնուցում հանքային պարարտանյութերով, պայքարում բույսերի հիվանդությունների և վնասատուների դեմ։*

*Նրանք հետևում են, որ բարձր որակով կատարվի նաև միջշարային տարածությունների տրակտորային փխրեցումը:*

*Ամռան շոգին, երբ ճակնդեղի տերևների կանաչ գույնը աստիճանաբար փոխարինվում է մուգ գույնով, և տերևները թափվում են գետնին, օղակի անդամները ձեռնամուխ են լինում պլանտացիաների ոռոգմանը: Բոլոր բույսերին բավարար քանակությամբ և հավասարապես ջուր տալու համար նրանք միջշարային տարածություններով անցնող ջրի առջև դնում են արգելափակոցներ: Ջրի յուրաքանչյուր լիտրը ռացիոնալ օգտագործելու նպատակով ոռոգումը կատարում են ակոսային եղանակով:*

*Կոլտնտեսականների ջանասեր աշխատանքի շնորհիվ Սեդայի օղակին հատկացված 5,7 հեկտար շաքարի ճակնդեղի պլանտացիաներում առատ բերք է աճում: Ճակնդեղագործները բազմակողմանիորեն նախապատրաստվում են բերքահավաքին: Ինչպես մշակման ժամանակ, այնպես էլ բերքահավաքի օրերին նրանք միշտ 1,5—2 արտադրական նորմա են կատարում: Բերքի կորուստներ չտալու համար երկու ատամ ունեցող եղանով հանում են տրակտորի քանդելուց հետո հողում մնացած արմատները: Ճակնդեղագործներն ագրոտեխնիկական բոլոր միջոցառումները կիրառում են, որպեսզի ճակնդեղի արմատները չմնան արևի տակ և չկորցնեն իրենց քաշն ու շաքարայնությունը:*

*Սեդա Սարգսյանը ընդամենը 3 տարի է, որ զբաղվում է ճակնդեղագործությամբ: Բայց շրջանի բոլոր ճակնդեղագործները լավ են ճանաչում նրան: Պլանտացիաների մշակման այս կամ այն մեթոդի առավելությունները որոշելու համար շատ հաճախ նրանք դիմում են Սեդայի օգնությանը: Վերջինս առանց զլանալու օգնության ձեռք է մեկնում բոլորին, խրախուսում ու ոգեշնչում բարձր բերք ստանալու համար:*

*Առաջավոր ձևերի ու մեթոդների կիրառման, համառ ու ստեղծագործ աշխատանքի շնորհիվ Սեդա Սարգսյանի ղեկավարած օղակի 10 անդամները յոթնամյակի առաջին տարին նշանավորեցին ռեկորդային ցուցանիշով: Նրանք իրենց մշակած 5,7 հեկտար պլանտացիայի ամեն մի հեկտարի միջին բերքատվությունը հասցրին 741 ցենտների: Դա ամենաբարձր ցուցանիշն էր ինչպես շրջանում, այնպես էլ ռեսպուբլիկայում: Մինչ այդ առաջավոր և ոչ մի օղակ կամ ճակնդեղագործ չէր հասել այդպիսի ցուցանիշի: Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը բարձր գնահատեցին Սարգսյանի հայրենանվեր աշխատանքը: Շիրակի դուստրը պարգևատրվեց Լենինի շքանշանով:*

*Սեդա Սարգսյանը՝ մեր ժամանակի հերոսուհին, իր բնավորությամբ, ապրելակերպով ու վարմունքով մարմնավորում է այն լավն ու գեղեցիկը, որ կա կոմունիզմ կառուցող մարդու մեջ: Նա անընդհատ ձգտում է առաջ, պայքարում նորի, կատարյալի համար: Սեդան իր աշխատանքով ակտիվորեն մասնակցում է հոյաշեն յոթնամյա պլանի իրականացմանը, ամեն ինչ անում, որպեսզի մոտեցնի մարդկության դարավոր երազանքը՝ կոմունիստական հասարակության ստեղծումը:*

*Շիրակի դուստրը հենց դրա մեջ է գտնում կյանքի հմայքն ու երջանկությունը:*

*Այսպես աշխատող ու պայքարող մարդիկ մեր ժամանակի հերոսներն են:*

**Վ. ԲԵՅԲՈՒԹՅԱՆ**

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Էջմիածնի պլաստմասսայի գործարանի փականագործներ Մարատ Սարգսյանը, Սամվել Շատվորյանը և Իշխան Կարապետյանը խնդրել են խմբագրությանը պարզաբանելու, թե ինչ նոր փոփոխություններ են եղել ՍՍՌՄ օրենսդրության մեջ:

Ստորև տպագրում ենք նրանց հետաքրքրող հարցի պատասխանը:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼԸ

*Վ. ՍԻՐՑԵՎ*

*ՍՄԿԿ XXI համագումարում խոսելով սոցիալիստական պետության զարգացման ուղիների մասին՝ Ն. Ս. Խրուշչովն ընդգծեց. «Սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունն է դեմոկրատիայի ըստ ամենայնի ծավալումը, բնակչության ամենալայն խավերին երկրի բոլոր գործերի կառավարման մեջ ներգրավելը, բոլոր քաղաքացիներին տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարմանը մասնակից անելը»:*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատմական որոշումների հիման վրա ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն ու Սովետական կառավարությունը մի շարք միջոցներ ձեռք առան միութենական ռեսպուբլիկաների իրավունքներն ավելի ևս ընդարձակելու, տնտեսական, կուլտուրական ու պետական շինարարության գործում նրանց դերը բարձրացնելու ուղղությամբ: Վերջին ժամանակներս ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ ուշադրություն է դարձնում սոցիալիստական օրինականության հետագա ամրապնդման վրա: Եվ դա լիովին հասկանալի է, որովհետև սովետական օրինականությունը պաշտպան է կանգնած սովետական հասարակական ու պետական կարգերին, ծառայում է կոմունիզմի կառուցման գործին մեր երկրում:*

*Կոմունիզմի ծավալուն շինարարության պայմաններում զգալիորեն աճում է աշխատավորների լայն մասսաների ու հասարակական կազմակերպությունների դերը օրինականությունն ապահովելու և քաղաքացիների իրավունքները պաշտպանելու, հակահասարակական արարքներն ու հանցագործությունները կանխելու գործում:*

*1958 թվականի դեկտեմբերին ՍՍՌՄ Գերագույն Սովետն ընդունեց «ՍՍՌՄ Միության և միութենական ռեսպուբլիկաների քրեական օրենսդրության հիմունքները», «ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քրեական*

դատավարության հիմունքները», «ՍՍՌ Միության, միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության օրենսդրության հիմունքները», «Պետական հանցագործությունների համար քրեական պատասխանատվության օրենքը» և «Զինվորական հանցագործությունների համար քրեական պատասխանատվության օրենքը»։

Այս օրենքների մեջ իրենց նոր արտահայտությունն են գտնում կոմունիզմի գաղափարները, Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության անդադրում հոգատարությունը կոմունիզմ կառուցող մարդու մասին, նրա նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման մասին։

Քրեական գործերով սովետական արդարադատության խնդիրներն են՝ հանցագործությունների արագ ու լիակատար մերկացումը, մեղավորների հայտաբերումը, օրենքի ճիշտ կիրառումն այնպես, որ յուրաքանչյուր հանցագործ արդարացի պատիժ կրի և ոչ մի անմեղ մարդ քրեական պատասխանատվության չկանչվի և չդատապարտվի։ Սովետական արդարադատությունը կոչված է քաղաքացիներին դաստիարակելու սովետական օրենքները ճշգրիտ պահպանելու և անշեղորեն իրականացնելու ոգով, սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու ոգով։

Նոր օրենքների ընդունումն զգալի չափով բացատրվում է նրանով, որ մինչ այդ գործող քրեական օրենսդրության հիմնական սկզբունքները, ինչպես և ուրիշ շատ օրենքներ, որոնք ընդունվել էին ավելի քան երեսուն տարի առաջ, արդեն շատ բանով հնացած էին։ Անցած տարիների ընթացքում մեր երկրում տեղի են ունեցել սոցիալ-տնտեսական խոր վերափոխումներ, որոնց հետևանքով ՍՍՌՄ-ում վերացվել են շահագործական դասակարգերը, ոչնչացվել է արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, կառուցվել է սոցիալիզմ։

Այս փոփոխությունները էլ, բնականաբար, պահանջում էին ինչպես սովետական քրեական օրենսդրության, այնպես էլ հնացած շատ օրենքների համապատասխան փոփոխություններ կատարել։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած նոր օրենքները նպատակ ունեն ամեն կերպ պաշտպանել Սովետական պետությունն ու այնտեղ սահմանված իրավակարգը, պաշտպանել քաղաքացիների անձն ու իրավունքները։

Մեր երկրի իրավակարգի հետագա ամրապնդումը մեծ չափով կախված է իրավախախտումներ ծնող պայմանների վճռական վերացումից։ Այդ գործում խոշոր դեր պիտի խաղա հասարակայնությունը։ Սոցիալիստական իրավակարգը խախտողների դեմ հաջողությամբ պայքարելու համար մեր հասարակայնությունը մեծ հնարավորություններ ու միջոցներ ունի։

Պետական օրգանների և սովետական հասարակայնության գործունեությունը նախ և առաջ պետք է նպատակ ունենա կանխել իրավախախտումները, անհնարին դարձնել դրանք։ Քաղաքներում ու գյուղերում, ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում, ամենուրեք պետք է ստեղծվի այնպիսի իրադրություն, որի դեպքում խարդախը չկարողանա հափշտակել ժողովրդական բարիքը, խուլիգանը չկարողանա խախտել հասարակական կարգը և սպեկուլյանտը չկարողանա եռակի թանկ վաճառել ապրանքները։

Որքան ավելի է մեր հասարակությունն առաջ ընթանում կոմունիզմի ուղիով, այնքան ավելի նեղանում է պետական հարկադրանքի սահմանը, այն-



քան ավելի մեծ նշանակություն են ստանում դաստիարակման ու համոզելու մեթոդները։ Հասկանալի է, սա չի նշանակում պետական օրգանների՝ միլիցիայի, դատարանի, դատախազության պայքարի թուլացում այն տարրերի դեմ, որոնք սովետական մարդկանց խանգարում են հանգիստ ապրել ու խաղաղ աշխատել, այսինքն՝ խուլիգանների, գողերի, կաշառակերների և այլ հակահասարակական, պարազիտային տարրերի դեմ։

Սովետական արդարադատությունը կոչված է քաղաքացիներին դաստիարակելու սովետական օրենքները ճշգրիտ ու անշեղորեն իրականացնելու ոգով, սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու ոգով։ Մեր ժողովուրդը, որ լայն ճակատով ծավալել է կոմունիզմի կառուցման գործը, այլևս չի կարող հաշտվել այն բանի հետ, որ սովետական հասարակության որոշ անդամներ հասարակությանը վնաս պատճառող արարքներ գործեն, խախտեն սոցիալիստական համակեցության կանոնները։ Խնդիրը ոչ միայն հանցագործության դեմ պայքարելն է այս բառի ուղղակի իմաստով, այլև սոցիալիստական իրավակարգի խախտումներ ծնող բոլոր պատճառների վերացումը. խնդիրն այն է, որ իսկական հոգատարություն ցուցաբերվի մարդու նկատմամբ, մեր հասարակության ամենամեծ ու ամենաթանկ կապիտալի նկատմամբ։

ՍՄԿՊ XXI համագումարը պահանջեց գլխավոր ուշադրությունը դարձնել այն պրոֆիլակտիկ, նախազգուշական միջոցների վրա, որոնք կկանխեին, իսկ երբեմն էլ բոլորովին անհնարին կդարձնեին սոցիալիստական կարգերին խորթ անցյալի մնացուկների դրսևորումը առանձին քաղաքացիների կողմից։ Սոցիալիստական պետության պայմաններում քրեական ռեպրեսիան հանցագործության դեմ պայքարելու միակ ու գլխավոր միջոցը չէ։ Մեր երկրում շատ կարևոր նշանակություն ունեն դաստիարակչական միջոցները։ Որքան մեր երկիրն ավելի առաջ ընթանա կոմունիզմի ուղիով, որքան ավելի բարձրանա աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը, որքան ավելի աճի սովետական մարդկանց գիտակցականությունը, այնքան ավելի ու ավելի մեծ նշանակություն կստանա համոզումը։

ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քրեական օրենսդրության հիմունքները, որ ընդունեց ՍՍՌՄ Գերագույն Սովետը, քրեական օրենսդրության բնագավառում միութենական ռեսպուբլիկաներին լայն լիազորություններ են տվել։ Այդ հիմունքները մի կողմից մեղմացնում և նեղացնում են քրեական պատասխանատվությունն այն արարքների համար, որոնք պետության ու հասարակության համար մեծ վտանգ չեն ներկայացնում, այսինքն՝ օրենքի այնպիսի խախտումների համար, որոնց դեմ հաջողությամբ կարելի է պայքարել վարչական ու կարգապահական, հասարակական ներգործության միջոցներով, բայց մյուս կողմից զգալիորեն ուժեղացրել են պատասխանատվությունը պետության դեմ առավել ծանր հանցագործությունների համար, ինչպես և քաղաքացիների կյանքի ու առողջության դեմ ուղղված հանցագործությունների համար։

Քրեական օրենսդրության հիմունքները պարզ և ճշգրիտ որոշում են քրեական պատասխանատվության սկզբունքը միայն որոշակի հանցանքի համար և պատժի անհատականացման սկզբունքը՝ ելնելով հանցանքի աստիճանից։ Հիմունքները տալիս են քրեական պատիժների լայն ցուցակը, սկսած այնպիսի մեղմ պատիժներից, ինչպիսիք են հասարակական պարսավանքն ու տուգանքը

և վերջացրած աքսորով ու ազատազրկումով։ Այդ արված է նրա համար, որ դատարանը հնարավորություն ունենա ընտրելու պատժի այնպիսի չափ, որն առավել համապատասխան լինի ինչպես կատարված հանցագործության բնույթին, այնպես էլ հանցագործություն կատարող անձի հասարակական վտանգավորության աստիճանին։ Քրեական օրենսդրության հիմունքները սահմանում են, որ միութենական ռեսպուբլիկաների օրենսդրությամբ, ընդհանուր միութենական հիմունքների սկզբունքներին ու ընդհանուր դրույթներին համապատասխան և հաշվի առնելով տեղական առանձնահատկությունները, կարող են սահմանել նաև պատիժների այլ տեսակներ, բացի նրանցից, որ նշված են քրեական օրենսդրության ընդհանուր միութենական հիմունքներով։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը գտավ, որ այսուհետև աննպատակահարմար է որպես քրեական պատժի միջոց պահպանել դատարանով ընտրական իրավունքից զրկելը և վերացրեց այդ օրենքը։ Ընտրական իրավունքներից զրկված բոլոր անձինք ազատվում են այդ պատժից։ Այժմ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 135-րդ հոդվածը ձևակերպվում է այսպես. «Հոդված 135. Դեպուտատների ընտրությունները ընդհանուր են. ՍՍՌՄ-ի 18 տարեկանին հասած բոլոր քաղաքացիները, անկախ ռասսայական ու ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից ու անցյալ գործունեությունից, իրավունք ունեն մասնակցելու դեպուտատների ընտրություններին, բացի այն անձինք, որոնք օրենքով սահմանված կարգով ճանաչված են խելագար։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ կարող է ընտրվել 23 տարեկանին հասած ՍՍՌՄ ամեն մի քաղաքացի, անկախ ռասսայական ու ազգային պատկանելությունից, սեռից դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից»։

Այն միջոցների շարքում, որոնց օգնությամբ վերադաստիարակում է իրականացվում, կարևոր տեղ է գրավում պայմանական դատապարտումը։ ՍՍՌՄ և միութենական ռեսպուբլիկաների քրեական օրենսդրության հիմունքների 38-րդ հոդվածը և «Սովետական օրինականության ու սոցիալիստական համակեցության կանոնների խախտումների դեմ պայքարի գործում հասարակայնության դերը բարձրացնելու օրենքի» նախագիծը մեծ նշանակություն են տալիս կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների միջնորդություններին։ Դատարանը, դատախազը, ինչպես նաև հետաքննության, միլիցիայի և այլ քննչական օրգանները հասարակական կազմակերպությունների կամ աշխատավորների կոլեկտիվների միջնորդություն լինելու դեպքում կարող են դատախազի հետ համաձայնեցնելով կարճել քրեական գործերն այն անձանց նկատմամբ, որոնք հասարակական մեծ վտանգ չներկայացնող հանցանք են գործել ու անկեղծորեն զղջացել և այդ անձանց վերադաստիարակելու և ուղղելու համար երաշխավորությամբ հանձնել միջնորդություն հարուցած հասարակական կազմակերպություններին կամ կոլեկտիվներին։

Սրանք սկզբունքորեն նոր դրույթներ են սովետական օրենսդրության մեջ։ Սրանք հասարակական կազմակերպություններին և աշխատավորների կոլեկտիվներին հնարավորություն են տալիս կարևոր դեր խաղալու օրինազանցների ուղղման ձևեր և մեթոդներ որոշելիս։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը նշեց, որ Սովետական պետության զարգացման



ներկա պայմաններում հանցագործին չափազանց երկար ժամանակով ազատազրկումը չի բխում ոչ մի անհրաժեշտությունից։ Առաջներում գործող օրենսդրությամբ մի քանի ծանր հանցագործությունների համար սահմանված էր ազատազրկում մինչև 25 տարի ժամկետով։ Կյանքը ցույց տվեց, որ պատժի այդպիսի երկար ժամկետը իրեն չէր արդարացնում։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած՝ ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քրեական օրենսդրության նոր հիմունքները սահմանում են ազատազրկման առավելագույն ժամկետ՝ 10 տարի, իսկ առանձնապես ծանր հանցագործությունների համար՝ մինչև 15 տարի։

Մինչև վերջին ժամանակներս մեզ մոտ գոյություն ուներ այնպիսի կարգ, որ կալանավորի փաստորեն գաղութում գտնվելու մեկ օրը հաշվվում էր երկու-երեք օր։ Դա պատճառ էր դառնում, որ ծանր հանցագործները կալանավայրից վերադառնում էին ժամկետից շուտ, կրելով որոշված պատժի միայն աննշան մասը։ Այս դրությունը սովետական մարդկանց իրավացի դժգոհությունն ու վրդովմունքն էր հարուցում։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը ելնելով ժողովրդի այն պահանջից, թե վտանգավոր հանցագործություններին ոչ մի մեղմություն ու զիջողություն չպետք է ցույց տալ, սահմանել է պատժից վաղաժամկետ պայմանական ազատելու նոր կարգ։ ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քրեական օրենսդրության հիմունքների 44-րդ հոդվածը սահմանում է, որ վաղաժամկետ պայմանական ազատում կարող է կիրառվել միայն այն դատապարտյալների նկատմամբ, որոնք իրենց օրինակելի վարքով և աշխատանքի նկատմամբ ազնիվ վերաբերմունքով ապացուցել են, որ իրենք ուղղվել են և փաստորեն կրել են պատժի ժամկետի կեսից ոչ պակասը։ Ծանր հանցագործությունների համար դատապարտված անձանց նկատմամբ վաղաժամկետ պայմանական ազատում կարող է կիրառվել պատժի նշանակված ժամկետի ոչ պակաս, քան մեկ երրորդ մասը կրելուց հետո։ Վաղաժամկետ-պայմանական ազատում և պատժի չկրված մասի փոխարինումը ավելի մեղմ պատժով՝ առանձնապես վտանգավոր ռեցիդիվիստների նկատմամբ չեն կիրառվում։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած՝ ՍՍՌ Միության և միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության օրենսդրության Հիմունքները որոշում են սոցիալիստական արդարադատության խնդիրները և ձևակերպում են դատական օրգանների կառուցվածքի ու գործունեության հիմնական սկզբունքները։

Դատարանակազմության օրենսդրության Հիմունքները որոշ փոփոխություններ են մտցրել ժողովրդական դատարանների առաջներում գործող սիստեմի մեջ. Թաղամասային ժողովրդական դատարանները վերացվել են, իսկ նրանց փոխարեն ստեղծվել են շրջանի կամ քաղաքի միասնական ժողովրդական դատարաններ։ Էական փոփոխություն է մտցված ժողովրդական դատարաններ ընտրելու կարգի մեջ։ Ժողովրդական դատավորների լիազորությունների ժամկետը 3 տարուց ավելացված է մինչև 5 տարի։ Շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարանների ժողովրդական ատենակալներն ընտրվում են բանվորների, ծառայողների և գյուղացիների ընդհանուր ժողովներում, ըստ նրա աշխատավայրի կամ բնակավայրի, զինծառայողները՝ զորամասերում, երկու տարի ժամկետով։

Ժողովրդական դատավորի լիազորությունների հնգամյա ժամկետի սահ-

մանումը լիազորությունների միասնական ժամկետ է ստեղծում բոլոր դատարանների, բոլոր դատավորների համար: Հինգ տարով ընտրված ժողովրդական դատավորը մեծ հնարավորություն է ստանում, որպեսզի լավ ուսումնասիրի դատարանի գործունեության շրջանը, ավելի լավ ճանաչի մարդկանց, կազմակերպությունների ու հիմնարկությունների ղեկավարներին, ավելի ակտիվ մասնակից դարձնի նրանց դատարանի դաստիարակչական գործունեությանը, զգալիորեն բարձրացնի իր դատավարական աշխատանքի որակը:

Ժողովրդական ատենակալներին անմիջականորեն աշխատավորների ժողովներում ընտրելը, ինչպես և նրանց լիազորությունների ժամկետի կրճատումը հնարավորություն են ստեղծում մեր երկրի աշխատավորներին ավելի լայնորեն մասնակից դարձնելու արդարադատության իրականացմանը և դրանով իսկ՝ պետության կառավարմանը:

ՍՍՌ Միության, միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության օրենսդրության Հիմունքները սահմանում են ժողովրդական դատարանների հաշվետվությունն անմիջականորեն ընտրողների առաջ, ինչպես նաև մյուս բոլոր դատարանների հաշվետվությունը՝ նրանց ընտրող աշխատավորների դեպուտատների համապատասխան Սովետների առաջ:

Մեր դատական օրգանների կազմակերպման ու գործունեության հիմնական սկզբունքներից մեկը դատավորների անկախության սկզբունքն է և նրանց ենթարկումը միայն օրենքին: Դատարանների հաշվետվություն սահմանելը աշխատավորների դեպուտատների Սովետների առաջ ամենևին չի խախտում այս սկզբունքը: Ընդհակառակը, հասարակայնության վերահսկողությունը կբարձրացնի դատական աշխատանքի որակը, կապահովի օրենքների ճշգրիտ ու անշեղ պահպանումը արդարադատության իրականացման պրոցեսում:

Միութենական ռեսպուբլիկաների դատական օրգանների դերի ավելի ևս բարձրացման նպատակով դատարանակազմության օրենսդրության Հիմունքները սահմանել են միութենական ռեսպուբլիկաների Գերագույն դատարանների պլենումներ կազմելու կարգ:

Միութենական ռեսպուբլիկաների գերագույն դատարաններում միութենական ռեսպուբլիկաների մինիստրությանը համապատասխան կարող են ստեղծվել նախագահություններ: Միութենական ռեսպուբլիկաների Գերագույն դատարանների նախագահությունների ու պլենումների իրավասությունը սահմանվում է միութենական ռեսպուբլիկաների օրենսդրությամբ:

Մեր ռեսպուբլիկայի Գերագույն դատարանը Հայկական ՍՍՌ դատարանակազմության օրենքին համապատասխան, որ Գերագույն Սովետն ընդունել է 1959 թվականի նոյեմբերին, կազմված է նախագահից, նախագահի տեղակալներից, դատարանի անդամներից ու ժողովրդական ատենակալներից և գործում է հետևյալ կազմով.

ա) քաղաքացիական գործերի դատական կոլեգիա.

բ) քրեական գործերի դատական կոլեգիա.

գ) դատարանի նախագահություն.

դ) դատարանի պլենում:

Հայկական ՍՍՌ դատարանակազմության օրենքը սահմանել է նաև Հայկական ՍՍՌ Գերագույն դատարանի նախագահության և պլենումի լիազորությունները: Գերագույն դատարանի պլենումը դատական վերահսկողության ֆունկցիա է իրականացնում: Նա կարող է վերահսկողության կարգով քննարկել



Գերագույն դատարանի նախագահության որոշումների մասին եղած բողոքները քրեական ու քաղաքացիական գործերի վերաբերյալ, կարող է հաստատել Գերագույն դատարանի դատական կոլեգիաների կազմերը, ընդհանրացնել դատական պրակտիկայի փորձը. Նա ղեկավար պարզաբանումներ է տալիս Հայկական ՍՍՌ օրենսդրության կիրառման հարցերի վերաբերյալ: Գերագույն դատարանի պլենումին հաշվետու են նրա նախագահությունը, քաղաքացիական ու քրեական գործերի դատական կոլեգիաների նախագահները:

Մեր սովետական արդարադատության բնորոշ գիծն է արդարադատության իրականացման գործին աշխատավորների ներկայացուցիչների լայն մասնակցությունը: ՍՍՌՄ Միության, միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության օրենսդրության հիմունքների 15-րդ հոդվածը, ինչպես և ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քրեական դատավարության Հիմունքների 41-րդ հոդվածը հասարակական կազմակերպություններին, հիմնարկների ու ձեռնարկությունների կոլեկտիվներին իրավունք են տալիս իրենց ներկայացուցիչներին լիազորելու, որ նրանք դատարանի կողմից քրեական գործերը քննելիս հանդես գան որպես հասարակական պաշտպաններ և հասարակական մեղադրողներ:

Դատաքննության գործում հասարակայնության ներկայացուցիչների մասնակցությունը նպաստում է ավելի արագ հայտաբերելու կատարված հանցագործության մեջ իսկապես մեղավոր անձանց: Հայկական ՍՍՌ դատարանակազմության օրենքի 23-րդ հոդվածն ասում է. «ՍՍՌ Միության և Հայկական ՍՍՌ օրենսդրությամբ սահմանված կարգով դատարանում հասարակական մեղադրությունը և պաշտպանությունը կարող են իրականացնել հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչները: ՍՍՌ Միության և Հայկական ՍՍՌ օրենսդրությամբ նախատեսված դեպքերում մեղադրությունը կարող են պաշտպանել նաև հանցագործությունից տուժած անձինք...»:

Հասարակական մեղադրողներն ու պաշտպանները արտահայտում են իրենց լիազորած կոլեկտիվների կարծիքը կատարված հանցագործության և այն կատարող անձի հասարակական վտանգավորության աստիճանի մասին:

Սովետական մարդիկ ներկայումս Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ զբաղված են կոմունիստական շինարարության վիթխարի պլանների իրականացումով: Իսկ դա հրամայաբար պահանջում է պահովել աշխատավորների լայն մասսաների ակտիվ մասնակցությունը մեր հասարակության տնտեսական ու հասարակական կյանքին:

«Կոմունիստական շինարարության վիթխարի պլանի իրականացումը,— նշել է Ն. Ս. Խրուշչովը,— պահանջում է վճռականապես բարելավել սովետական մարդկանց դաստիարակման, նրանց կոմունիստական գիտակցության ու ակտիվության բարձրացման ամբողջ աշխատանքը, ձևավորել նոր մարդուն կոլեկտիվիզմի ու աշխատասիրության, հասարակական պարտքի գիտակցության ոգով, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության ոգով, նոր հասարակության բարոյականության բարձր սկզբունքների պահպանման ոգով»: Ահա հենց այս գաղափարներով էլ բնորոշ է սովետական օրենսդրության զարգացման նոր փուլը:

---

մանակակից ռևիզիոնիզմի պարագլուխները սոցիալիստական պետության կողմից ժողովրդական տնտեսության ղեկավարումն անվանում են «բյուրոկրատիզմ» և «բյուրոկրատական էտատիզմ», առաջադրում են պետության անհապաղ մահացման հակամարքսիստական դեղատոմսը։ Հեղինակը ռևիզիոնիզմին հակադրում է միակ գիտական մարքսիստական-լենինյան դրույթները պետության մահացման պայմանների մասին։ Նա մատնանշում է, որ արդի պայմաններում սոցիալիստական պետության պահպանման ու ամրապնդման անհրաժեշտությունը չի նշանակում անփոփոխ պահպանել պետական ապարատի կազմակերպչական ձևերը, ժողովրդական տնտեսության կառավարման ձևերը։ «Ընդհակառակը,— գրում է նա,— պետական կառուցվածքի և կառավարման ձևերն անընդհատ փոփոխվում, կատարելագործվում են՝ արտադրության սոցիալիստական եղանակի մեջ տեղի ունեցող փոփոխություններին համապատասխան» (էջ 137)։ Իսկ դա նշանակում է՝ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացում, մասսաների հետ կապի ուժեղացում, պետական կառավարման գործերում աշխատավորների լայն մասնակցության ապահովում։ Հեղինակը շեշտում է, որ ռևիզիոնիստներին կատաղեցնում է դեմոկրատական ցենտրալիզմի, պարտիայի ղեկավար դերի մասին լենինյան տեսությունը։ Նրանք պարտիայի ղեկավար դերը նենգափոխում են «մոնոպոլիզմի» գաղափարով, առաջ քաշելով «դեմոկրատական ղեկավարության», «դեմոկրատիան ցենտրալիզմից բաժանելու», «ցենտրալիզմը դեմոկրատիային ենթարկելու» մերկապարանոց իդեաները։ Քննադատելով այս դրույթները՝ հեղինակը պարզաբանում է դեմոկրատական ցենտրալիզմի նշանակությունը սոցիալիզմի կառուցման գործում։

Փիլիսոփայական մատերիալիզմի գրքերից Ռ. Վարդանյանը համոզիչ փաստերով ցուցադրում է սոցիալիզմի գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ և ռևիզիոնիստների ճիգերի անպտուղ լինելը։

Գրքի արժանիքներից մեկն էլ այն է, որ հեղինակը բանավեճի պրոցեսում դիմում է մետաֆորիկ արտահայտությունների, կատարում համոզիչ ու գեղեցիկ համեմատություններ։ Սակայն մենք հանդիպում ենք շատ արտահայտությունների, որոնք հայերեն լավ չեն հնչում («...դեռ աչքեր հնում...», «թանձրացած գաղափարախոսական մշուշի պտղոր կաթիլները...», «...աբեղնյան կծիկի ծայրը բռնած...» և այլն։ Կասկածից վեր է, որ թևավոր արտահայտություններ օգտագործելը խրախուսելի է, բայց հեղինակը շատ է տարվում դրանցով, երբեմն կորցնում է չափի զգացումը։ Հեղինակը հաճախ մոռանում է, որ գրքույկը պետք է ծառայի ընթերցողների լայն շրջաններին։ Գրքույկում տեղ են գտել մի շարք դժվարամարս նախադասություններ, ինչպես, օրինակ. «...հույսերը դնելով մեշչանական սենտիմենտալության վրա, նրանք նկարագրում են պրոլետարիատի դիկտատուրայի «սարսափները», հոգոց հանելով «ինտեգրալ դեմոկրատիայի», «հումանիստական ինտելեկտուալ» սոցիալիզմի համար»։ Կամ՝ «Ռևիզիոնիզմի առասպելները «նոր», «ժողովրդական», «բարգավաճող» կապիտալիզմի մասին... ոչինչ ավելի չեն, քան գոգոլյան Պոպրիշչինի զառանցական բարբաջանքներն ալժիրյան բայի ելունդի մասին»։ Կան նաև լեզվական-ոճական շատ անհարթություններ։

ՍՏ. ՔՈՉԱՐՅԱՆ





Խմբագրության հասցեն՝ Երևան,
ՀԿԴ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
2—04—66, 2—02—24

Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—56—92
2—04—66, 2—02—24

ՎՖ 07276 Պատվեր 2134 Տիրաժ 9300

Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ։ Ստորագրված է տպագրության 6/IX 1960 թ.։

Խմբագրության ստացված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան



ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ՀԵՏԱՔՐՔՐԱԿԱՆ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿՏՈՐ ԾՈՎԱՅԻՆ ԽՈՏԻՑ

*Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի մի շարք մանածագործական ֆաբրիկաներ (Չենդինի, Դենպխենի և այլն) յուրացրել են ծովային «ամաբիպխուլ» խոտից բարձրորակ կտորների արտադրությունը, որը մեծ քանակությամբ աճում է Արևելյան ծովում։ Նրանից ստացված կտորը գեղեցիկ է և ամուր. այն մեծ ընդունելություն է գտնում բնակչության կողմից։ Միայն Հյուսիսային Խամգեն նահանգում 1960 թվականի ընթացքում ենթադրվում է հավաքել հինգ հազար տոննա ծովային խոտ և դրանից պատրաստել մեկ միլիոն 700 հազար մետր կտոր։*

## ՈՒՂՂԱԹԻՌԸ ՀՅՈՒՐԱՆՈՑԻ ԿՏՈՒՐԻՆ

*Վարշավայում կառուցվող «Գրանդ» հյուրանոցի կտուրին կատարվել են ուղղաթիռի վայրէջքի փորձեր։ Ապագայում այդ հնարավորություն կստեղծի ուղևորճանապարհորդների արագ տեղափոխման համար՝ ուղղակի օդանավակայանից դեպի հյուրանոց։*

## «ԿԵՆԴԱՆԻ» ՍՈՍԻՆՁ

*ԱՄՆ-ի Օկլենդ քաղաքի ռազմա-ծովային հոսպիտալի կողմից պատրաստված սոսնձով շան ծնոտի մեջ ատամ է դրվել։ Այդ ատամն արդեն մի տարի է, ինչ ծառայում է շանը։ Մարդկանց վրա փորձեր դեռ չեն կատարվել, սակայն գիտնականների կարծիքով դրանք բավականին հուսադրող են։*

*Օգտագործվող սոսինձը բաղկացած է մարդու ոսկորների բաղադրության մեջ մտնող նյութերից՝ կալցիումից, ֆոսֆորից և գլիկոգենից, որոնց լուծույթի մեջ ավելացնում են պոլիէֆիրային կպրանյութ և մի քանի կատալիզատորներ։*

## 650 ԿԻԼՈԳՐԱՄԱՆՈՑ ԽՈԶ

*Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի Ցզինսյան գավառի Խուացզյատունյան ժողովրդական կոմունայի ֆերմայում 555 կիլոգրամ քաշ ունեցող խոզի հետ միասին, աճեցված է 650 կիլոգրամից ավելի քաշ ունեցող մի հսկայական խոզ։ Լյաոլին նահանգում այդպիսի հսկայական խոզեր առաջին անգամն են աճեցվում։ Նրանց կերակրել է կոմերիտուհի Ցյույ Սին-չժին, որը ֆերմա է եկել 1957 թվականին, դպրոցն ավարտելուց հետո։*

## ԳՐՊԱՆԻ ԹԹՎԱԾՆԱՅԻՆ ՍԱՐՔ

*ԱՄՆ-ի բժշկական սարքավորում արտադրող ֆիրմաներից մեկը սկսել է արտադրել թթվածնով հարստացված գրպանի ապարատներ, որոնք կարելի է օգտագործել հանկարծակի նոպաների և ծանր շնչարգելության ժամանակ։ Ապարատը հիշեցնում է ինքնահոս գրիչ, որի մեջ տեղավորված է 3 լիտր խտացրած թթվածին. այդ բավական է երկու րոպե շնչելու համար։ Կա նաև մի այլ՝ կիլոգրամից պակաս քաշ ունեցող ապարատ, որն ապահովում է թթվածնով 25 րոպե։*

## ՑՏՈՐԸ ՊԱՀՊԱՆՈՒՄ Է ԱՏԱՄՆԵՐԸ

*Ատամների, հատկապես երեխաների ատամների փչացման դեմ պայքարելու նպատակով փորձեր են տարվել խմելու ջրի հետ քիչ քանակությամբ ֆտորի լուծույթ խառնելու։ Այդ փորձերը տվել են բացառիկ դրական արդյունք։ Այժմ ԳԴՌ-ի Կարլ Մարքս—Շտադտ քաղաքում կառուցվում է ջրի ֆտորացման համար Եվրոպայի ամենամեծ սարքը։*